Լուսանկարը՝ ԶԱՎԵՆ ԲՈՏԻԿՅԱՆԻ

# ՋԱՀԵԼՈՒԹՅՈՒՆ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Երբ մեր պապերը եղել են ջահել,
Տիրել են երկրում ձմեռն ու ձյունը,
Հողմերի դեմ է կրծքաբաց ելել
Նրանց փոթորկոտ ջահելությունը:

Երբ մեր հայրերը եղել են ջահել,
Որոտն է լցվել հայրենի տունը,
Ոսոխների դեմ կռիվ է մղել
Մեր քաջ հայրերի ջահելությունը:

Եղել են հեռու արևոտ օրեր
Ու խաղաղվել է ջրերի հունը,
Անապատներ է ծաղկով զարդարել
Մեր ավագ եղբոր ջահելությունը:

Նրա կամքով է երկինք խոյացել
Սեգ պալատների ամեն մի սյունը,
Մեծ թռիչքների թևեր է բացել
Մեր ավագ եղբոր ջահելությունը:

Կդառնանք շուտով մենք էլ պատանի,
Աշխարհին կտանք մեր ծով ավյունը,
Եվ հայրենիքը մեզնով կտոնի
Իր հավերժական ջահելությունը:

# ԳԵՆԵՐԱԼՆ ՈՒ ՀԵԾԱՆՎՈՐԴԸ

ՎԱՐՈՒԺԱՆ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ



Քո այդ հեծանվով գլխիդ փորձանք ես բերելու... թո՛ւհ, թո՛ւհ, լեզուս չորանա... Ախր քշում ես, քրտնում, մրսում, հիվանդանում: Ես հիվանդ պահելու հալ ու ժամանակ չունեմ, գիտե՛ս: Նոր-նոր երեսիդ մի քիչ գույն է երևում... Թո՛ւհ, թո՛ւհ, աչքով չտամ... Հեծանիվը դի՛ր տեղը, մի գի՛րք վերցրու, նստիր կարդա՛...

Մայրը խոսում, բարկանում էր, ինքը միջանցքում, հեծանիվը պահած, կանգնել ծիծաղում էր: Ո՛չ տանում էր, տեղն էր դնում, ո՛չ էլ տնից դուրս էր գալիս: Բանն այն չէ, որ մորը բարկացնելը նրան ուրախացնում էր, ո՛չ: Նրան դուր էր գալիս մոր քնքուշ-կոպիտ հոգատարությունը և այն, որ նա չի հասկանում կամ չի ուզում հասկանալ, որ որդին ուժեղ և համարձակ լինելու հարցում չի ուզում ետ մնալ ուրիշներից և որ երեխային ամենևին հաճելի չէ, երբ նրան հիվանդոտ են համարում և ազատում են ֆիզկուլտուրայի դասերից: Ինքն ուզում է կոփվել, ուզում է, որ մյուսներից չտարբերվի, լինի բոլորի պես:

— Լավ, մա՛...— հեծանիվը առաջ հրեց:

— Շուտ. կվերադառնաս և բակից մի քայլ չհեռանաս... հետևելու եմ:

— Ես պահպանելու եմ փողոցի երթևեկության կանոնները...

— Ա՛յդ էր պակաս,— մայրը ձեռքով ղեկը ետ պահեց,— հեծանիվը տար տե՛ղը դիր: Ես ուզում եմ, որ դու ողջ-առողջ մեծանաս:

— Մա՛ ջան,— շողոքորթեց-սիրաշահեց տղան,— ես զգույշ կլինեմ, քրտնած-քրտնած ջուր չեմ խմի...— ձայնը փափկացրած՝ կամաց համոզում էր: Արդեն սանդուղքի աստիճաններից իջեցնում էր երկանիվ «Դպրոցականը» և խոստումները կցկտուր ուղարկում էր ներքևից, ավելի ներքևից: Եվ մայրը նույնպես մեկ-երկու բառանի պատվիրաններ էր հղում:

Բակում նա հեծանիվը քշեց հարևան աղջիկներին զարմացնելու, ծանծրացնելու աստիճան: Հետո մտովի հաշվեց, որ մինչև մոտակա քաղաքային հրապարակը քշելն ու վերադառնալը կտևի ոչ ավելի, քան տասը րոպե, և մայրը չի հասցնի նկատել նրա բացակայությունը: Նա իր մեկնումի պահը ընտրեց, երբ մայրը, հերթական ստուգումը կատարելիս, երևաց ու անհետացավ երրորդ հարկի պատուհանի շրջագծի մեջ:

Փողոցում մեքենաները նրան թվացին ավելի շատ, քան իր հետիոտն եղած ժամանակ: Նա ոչ միայն չէր խախտում փողոցի երթևեկության կանոնները, այլև տրամադրված էր նկատելու վարորդների նվազագույն խախտումները: Այդ ավտոմեքենաներն, իհարկե, թշնամական տանկեր չէին, ոչ էլ ինքը համարձակ հետախույզ էր, բայց վտանգի մթնոլորտն անտարակույս գոյություն ուներ: Եվ նա, ի վերջո, սկսեց քշել մայթերի վրայով, իր նախատեսածից ավելի դանդաղ և, իհարկե, ոտնատակ չտալով հեծանիվ չունեցող անցորդներին:

Քաղաքի հրապարակի եզրերին կանգնած էին մի քանի ավտոմեքենա: Նա հպարտ էր, որ անվթար հասավ իր նպատակին: Եվ հեծանիվը կանգնեցրեց ավտոմեքենաներից մեկի կողքին: Նրա կանգառը պատահական չէր: Նա այդ սև «Վոլգայի» մեջ վարորդի կողքին տեսել էր զինվորական համազգեստով մի գեներալի, որն արմունկը հանել էր դռնակից դուրս:

Տղան, հեծանվի ղեկը պահած, հիացմունքով այնքան նայեց, որ ի վերջո գրավեց գեներալի ուշադրությունը: Նա գլուխը շրջեց տղայի կողմը և ժպտաց: Տղայի դեմքն ավելի պայծառացավ:

— Բա՞ն ես ուզում ասել,— մեղմ հարցրեց գեներալը:

Տղայի դեմքը մտահոգ արտահայտություն ընդունեց:

— Իմ հեծանվի դողերի փուքսն իջել է: Ձեր մեքենայի օդամղիչը չէի՞ք տա:

Տղան ինքն էլ զարմացավ իր համարձակության վրա: Նա գոհ էր իր հնարամտությունից, թեև չէր ստում, որ անիվների փուքսը իջել է: Վարորդն էլ լսում էր նրանց խոսակցությունը, և գեներալի գլխի շարժումից հետո, դուրս եկավ մեքենայից և բացեց ծանրոցատեղի դռնակը:

— Անունդ ի՞նչ է,— հարցրեց գեներալը:

— Հովիկ:

— Լա՞վ ես սովորում...

Սովորական հարցեր էին և՛ իր տարիքի մասին, և՛ նախասիրած դպրոցական առարկաների մասին, և՛ ապագայում իր ընտրելիք մասնագիտության մասին: Բայց հարց տվողը գեներալ էր, և ինքը հաճույքով էր պատասխանում: Վարորդը օդամղիչի ծայրը հարմարեցրեց անիվի բլթակին և ասաց.

— Ամո՛ւր պահիր, Հովի՛կ,— և բարձրացնում իջեցնում էր օդամղիչի լծակը:

Հովիկը զսպում էր ուրախությունը և ջանում էր լուրջ արտահայտություն տալ իր դեմքին: Նա գեներալի հարցերին պատասխանում էր կարճ և որոշակի, ինչպես ցածրաստիճան զինվորականը: Երկրորդ անվով էին զբաղված, երբ գեներալը հարցրեց.

— Ծնողներդ գիտե՞ն, որ դու հեծանվով եկել ես հրապարակ:

Հովիկը շփոթմունքից քիչ մնաց բաց թողներ օդամղիչի ծայրը:

— Չեղա՛վ. չեղա՛վ...— գլուխը շարժեց գեներալը:

Հովիկը չկարողացավ որոշել՝ նրա «չեղավ»-ի խստության չափը և տրամադրված էր համարելու, որ նա, այնուամենայնիվ, ներողամիտ է: Տղան և վարորդը ստուգեցին փքված անիվների դիմադրողականությունը: Վարորդն օդամղիչը դրեց «Վոլգա»-ի ծանրոցատեղի մի անկյունը: Հովիկը շնորհակալություն հայտնեց և՛ նրան, և՛ գեներալին:

— Դե, մա՛րշ դեպի տուն,— ասաց գեներալը:

Հովիկը հրաժեշտ տվեց և հեծանիվը քշեց առաջ: Այսպես թե այնպես, նա գոհ էր իր այդ ոչ մեծ արկածից, որը բարեբախտաբար վերջացավ առանց վըրաերթի: Եվ երբ նա այդ մասին պատմում էր իրենց բակի զարմացած ու չհավատացող տղաներին ու աղջիկներին, փքված էին ոչ միայն նրա հեծանվի դողերը: Անտեղյակ մնաց մայրը, որն իր հերթական ստուգումը կատարելիս՝ կրկին երևաց ու անհետացավ երրորդ հարկի պատուհանի շրջագծի մեջ:

# ԹԱՑ ԵՐԿՆՔԻ ՏԱԿ ՀԻՆ ԼԵՌՆԵՐ

*ՀՐԱՆՏ ՄԱԹԵՎՈՍՅԱՆ*

*Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ*

. Իմ մայրը ժպտում էր, լամպի պայծառ լույսի մեջ անընդհատ ժպտում էր, բայց նավթն ափսոս էր, իմ մայրն իջեցրեց պատրույգն ու փչեց լամպը։ Ես լսում էի, թե մթան մեջ ինչպես է շրշում նրա ժպիտը, հետո՝ թե քունքերի վրա ինչպես է ցամաքում արտասուքը։

— Մե՛ր, ա՛յ մեր,— ասացի ես,— ինչու՞ ես լաց լինում։

— Լաց չեմ լինում, քնի՛ր,— ասաց նա։

— Բա ի՞նչ ես անում։

— Ուրախանում եմ,— ասաց նա։

— Մե՛ր, ա՛յ մեր, Զարիկի մարդը լա՞վ մարդ էր։

— Ասատո՞ւրը։

— Նրա անունն էլ էր Ասատո՞ւր, ա՛յ մեր։

— Ասատուրը լավ տղա էր, քնի՛ր։

— Մե՛ր, ա՛յ մեր, բա որ Ասատուրը գա տեսնի Զարիկն ամուսնացել է։

— Ասատուրը չի գալու, քնի՛ր։

— Բա որ հանկարծ գա, գա տեսնի իրենց տունը դատարկ։

— Չի գալու,— ասաց նա,— վիրավոր էր, Թիֆլիսի հիվանդանոցում տանջվեց, տանջվեց խեղճ տղան ու մեռավ։

— Մե՛ր, ա՛յ մեր, բա հիմա նրան ո՞վ է հիշելու։

— Իրա հերնումերը,— ասաց նա։— Մեր չուներ՝ հերը։

— Մենակ հե՞րը, ա՛յ մեր։

— Մենակ հերը,— ասաց նա։

— Մե՛ր, ա՛յ մեր, բայց հերը մեծ է, ծեր է, ուժ չունի։

— Զարիկը,— ասաց նա։

— Մե՛ր, ա՛յ մեր, Զարիկը հիմա նրան կհիշի ու լաց կլինի։

— Թող լաց լինի,— ասաց նա,— քնի՛ր։

— Մե՛ր, ա՛յ մեր, Վանին չի թողնի, Վանուց կամաչի, չի հիշի։

— Թող չթողնի, թող չհիշի,— ասաց նա,— թող մի կուշտ լաց լինի ու ազատվի, մեղք է էն աղջիկը։

— Մե՛ր, ա՛յ մեր, Զարիկը չի հիշի՝ նա կմնա դըռանը։

— Ո՞վ դռանը կմնա,— անկողնի մեջ վրա նստեց մայրս։

— Ասատուրը։

Խեղդված, խուլ՝ նա շշնջաց.

— Հիսո՜ւս Քրիստոս, Թիֆլիսի հիվանդանոցում Ասատուրը մեռել է, թաղել են, չկա, ապրողը պիտի ապրի, քնի՛ր։

— Մե՛ր, ա՛յ մեր, որ մեռնում են՝ ո՞ւր են մեռնում։

— Լրիվ,— ասաց նա։

— Իրենք էլ չեն լինո՞ւմ։

— Չեն լինում,— ասաց նա։

— Մե՛ր, ա՛յ մեր, էդ ինչպե՞ս է լինում, որ լինում են, հետո էլ չեն լինում։

— Չգիտեմ,— ասաց նա,— գնա մահի՛ն հարցրու։

— Բա մեղք չե՞ն, ա՛յ մեր։

— Մեղք են,— ասաց նա,— տանջվեց, տանջվեց ու հանգավ խեղճ տղան։

---

*Սկիզբը՝ № 10-ում։*

— Մե՜ր, ա՛յ մեր, կգա, դուռը փակ կլինի, կմնա դռանը: Տուն չի ունենա, երեխաներն ուրիշի երեխաներ կլինեն, չեն թողնի իրենց համբուրի, կինն ուրիշի կին կլինի: Անցորդ մուրացիկի պես, օտարականի պես վիզը թեքած.... Մե՜ր, ա՛յ մեր, շան լակոտները հիմա իրենց մորը հիշում են:

— Շան լակոտները հիմա քնած են,— ասաց նա,— քնի՛ր:

Լռության մեջ ես ականջ պահեցի իմ ներսի ձայներին, և ես լսում էի, թե ինչպես են անջատվում շան լակոտներից նրանց փոքրիկ երազները և ինչպես է շրշում զեփյուռը խոտերի մեջ, և իմ ներսում շվիի նըվագ կար, հյուսվում էր, հավաքվում էր, քանդվում էր, ցրվում էր... Ես կարծում էի նվագն իմ ներսում ու ինձ համար է, միայն ես եմ լսում, բայց դա իմ ներսում չէր և դա զեփյուռի շրշյունը չէր, և շան լակոտներից իրենց մոր մասին նրանց փոքրիկ երազները չէին անջատվում, իր հին շվին իր թեփուկոտ, իր խշխշան շրթունքներով փչում էր Դանելանց Արտեմ քեռին, փըչում էր դրսում մնացածների և անկողնի մթան մեջ իրենց ներսի ձայներին ականջ պահողների համար, ծկլթոցով ցամաքող արտասուքի և շրշյունով ծաղկող լուռ ժպիտների մասին, խեղճ Վանու և խեղճ Ջարիկի համար, որոնք հիմա, Ջարիկը և Վանին, մարդուկնոջ հին լուսանկարի պես, իրար կողքի նստել էին թախտին, աչքերը թարթում էին և իրենց ներսում լսում էին Ասատուրի խեղճ գոյությունը, իրենց երեխաների անխռով քունը Շամուտի հեռու ուրթում, շվիի նվագը և թե ինչ է լինելու հետո:

— Վանի՜, հե՜յ,— Շիշթափի փարախից կանչեց Ջավենը.— տեղդ նեղ է՞,— ծիծաղեց Ջավենը,— տեղդ տաք է՞, տեղդ նեղ է՞...

— Ա՜յտա, համոզի՜ր,— իր սառը փարախից, յափընջու միջից, աստղերի տակ կանչեց Ջավենը,— տես, թե քույր ունի՝ քրոջն էլ ինձ համար ուզե՜նք, ինձ համար ուզե՜նք, ինձ համա՜ր...

Իրենց վրանում, թախտին կողք-կողքի նստած՝ նրանք լուռ էին, Ջավենի խոսքերի վրա գուցե թե լուռ ժպտացին, հետո վրանի դուռը շրխկաց ու դուրս պըրծավ պանրի չափ սպիտակ, աղջամուղջի մեջ շատ սպիտակ մերկ մի երեխա, տղա-երեխա, ու կչկչալով, կտկտալով, ծիծաղից խեղդվելով փախավ, նրա ետևից ցամքոցը թե շապիկը ձեռքին՝ մայր Ջարիկը.

— Բռնեցե՜ք, բռնեցե՜ք, էդ ավազակին բռնեցե՜ք:

— Թո՜ղ, ախչի՛, թող գա՜,— Շիշթափի լանջից կանչեց Վանին:

— Կմրսի,— ասաց Ջարիկը:

Հեռու բարձր սարերն սպիտակել էին. կարկուտ էր դրել: Յափնջու մեջ՝ Վանին նայում էր, թե ինչպես է մոջնաթմբի ետևը կորչելով ու դարձյալ սպիտակին տալով, կտկտալով ու չորեքթաթ, շաղոտվելով գալիս իր տղան, և նրա հետ գնում էր կարճ, բրդոտ, բարձր գամփռը, հետո Վանին ասաց.

— Ցուրտը դրա՛ն ի՞նչ է անելու:

Ես նստել էի մեր վրանի դռանն ու դողում էի: Ես նայում էի հեռու սարերի կարկուտներին ու ավելի էի դողում: Ձեռքերս ծնկներիս մեջ սեղմած՝ ես նայում էի թաց խոտերի միջով դեպի հայրը չորեքթաթվող մերկ այդ երեխային և սարսռում էի: Կարմիր, բարձըր գամփռի բուրդը տաք էր թվում, բայց այդ մորթին իմը չէր, այդ սառը կարկուտների դեմ ես շվիի պես մերկ էի, ցուրտն իմ մեջ սվսվում էր: Ասում էին խակ սալոր եմ կերել՝ դողէրոցք է, ասում էին բկացավ է, իսկ մերկ այդ երեխան զույգ թաթիկով կառչել էր այծի կրծքից, ծծում էր տռուզ պտուկը, այծը նրան քարշ էր տալիս, բայց նա կպել էր ու ծծում էր: Եվ իմ մայրըն ասաց, որ սարերն ինձ համար չեն, ես սարերի համար չեմ:

— Գնա գյո՛ւղ,— ասաց իմ մայրը,— քաղա՛ք գնա:

Եվ իմ թուրքերենը կիսատ մնաց, և այդ պատճառով էլ հիմա լավ չպատմեցի Վանու և թուրքի զրույցը շան լակոտների մասին: Թուրքն ասաց. «Աշնանը դըրանք շներ են լինելու»: Վանին ասաց. «Եթե լավ պահեմ»: Թուրքն ասաց. «Դու լավ չոբան ես՝ լավ կպահես»: Վանին ասաց. «Կովի էս չորս տարում գիլին մի ոչխար չեմ տվել, մի գառ չեմ տվել. ընկերս եղել է մի հին, մի պառավ, մի մաշված Չամբար»: Թուրքն ասաց. «Ես քեզ լակոտ չեմ տալիս. ախպեր եմ տալիս, ընկեր եմ տալիս»:

Սարերն ինձ համար չէին, բայց քաղաքն էլ ինձ համար չէր: Իմ հորաքրոջ տղան նստեց նամակ գրելու, գրեց, որ եղանակն այստեղ Երևանում լավ է, որ ինքը լավ է, որ ես լավ եմ, որ քնում ենք լրիվ ութ ժամ, նախաճաշին տալիս են ջեմ, կարագ, քաղցր կակաո, ճաշին տալիս են բորշ, կատլետ, կամպոտ կամ խաղող, ընթրիքին տալիս են բիտկի, չախոխբիլի, գունավոր թեյ՝ չորս կտոր շաքարի հետ, սև ու սպիտակ հացն ինչքան ուզես, և մեր ուսուցումն առաջ է գընում: Դա ճիշտ նամակ էր: Առավոտյան տողանից երեկոյան տողան՝ այդտեղ ամեն ինչը կար, նա գրում ու լաց էր լինում, ամեն էջի վրա՝ երկու կաթիլ արտասուք: Երկու կաթիլ, որովհետև երկու աչք ուներ, ամեն աչքից՝ մի կաթիլ: Երկու աչքից նա կարող էր կաթեցնել շատ կաթիլներ, բայց նամակը կչեչոտվեր, չէր կարդացվի: Դա սուտ արտասուք չէր, դա ճիշտ նամակ էր, բայց նրա կակավոն ինձ դուր չէր գալիս, նրա գունավոր թեյն ինձ դուր չէր գալիս, նրա արտասուքն ինձ ծիծաղեցնում էր: Եվ դեռ՝ գյուղացիների ինչի՞ն էր պետք քաղաքային եղանակի լավությունը:

— Գրի՜ր, որ շատ չես լաց լինում, որպեսզի նամակը ընթեռնելի մնա,— ասացի ես:

Նա կարողանում էր լինել միաժամանակ հուզմունալից և կարգապահ: Նա ծրարեց նամակը, գրեց հասցեն, բայց հասցեի վրա լաց չեղավ, որովհետև փոստատարները նրա արտասուքը բանի տեղ չէին դնի, հասցեն պարզապես սխալ կկարդային; և կոկ հագնը-

ված, ձիգ, կոշիկները մաքուր՝ գնաց կանգնեց ուսմասվարի դեմ: Նա նրանից թույլտվություն վերցրեց ծրարը տանելու, փոստարկղ գցելու: Հետո, դարձյալ թույլտվությամբ, նա գնաց մարզիկի հոյակապ իր մարմինը, մերկ, պահելու գեղարվեստի ակադեմիայի ուսանողների դեմ ,որպեսզի նրանք քանդակեն իրենց «Ըմբոստը», «Պատանին», «Հասունացում», «Ապառաժներ մենք կպոկենք», ժամը՝ երեք ռուբլի, իսկ այդ ժամանակ ես նստել էի գրելու իմ նամակը և չէի կարողանում: «Սարերի կարկուտը հալվել է՞»,— գրում էի ես և ջնջում:—«Ծները ո՞նց են,— գրում էի ես և ջընջում:— Արտերը դեղնել ե՞ն, մոռը հասել է՞, հետո որ կարկուտները հալվեցին ու գետը վարարեց՝ մեր լողալու տեղը ավազ չի՞ լցվել, թուրքն ու Վանին չեն կռվե՞լ, պապն այգում կանգնած է՞, Աբովենց բալը չի կարմրե՞լ, ներին հոտը քաշում է՞. Ասատուրի անունը դեռ Մայոր է՞, Արտեմ քեռին չի նվագո՞ւմ, էն հեռու լանջի երկու հատ կարմիր կակաչը դեռ էնպես կարմի՞ր են կանաչի մեջ, լոբին ծաղկել է՞, շները ո՞նց են...»

Ես հանրակացարանից դուրս եկա, գնացի, այդ տապի ու փոշու մեջ Երևան ոլոր-մոլոր քաղաքում գըտա Շիլաջի թաղը, Շիլաջի՝ իմ մոր հորաքրոջ դստեր տունը:

— Պա՛հ, պա՛հ, պա՛հ,— ծիծաղեց իմ մոր հորաքրոջ դստեր ամուսինը. նա թոշակառու և պարապ էր, ամեն ինչի վրա ծիծաղում էր: Նա հին հաղպատցի էր, բայց իրեն գյուղացի չէր համարում, այլ համարում էր հեղափոխական, որովհետև ապստամբել էր, նախ, ամբողջ Հաղպատը, հետո՝ նա տեղյակ էր, թե Ջամալուի երկաթուղային կամուրջն ինչպես են խլել հայ հեղափոխականները վրաց հակահեղափոխականներից:— Էլ քո ի՞նչն է գյուղացի,— ծիծաղեց նա,— իսկական քաղաքի տղա ես դարձել, զավադսկո՛յ,— կնքեց նա:

Այդ տապի ու փոշու մեջ իմ մոր հորաքրոջ դուստրը մի քիչ լաց եղավ մեր սառը կարկուտների համար, սառն աղբյուրների ու զնգուն կանչերի համար, պաղպաղակի փող տվեց՝ հինգ ռուբլի:

— Ահնիձորը քանի հիշես՝ գազով ջո՛ւր խմիր,— լաց եղավ նա,— քանի հիշես՝ պաղպաղա՛կ կեր:

Հինգ ռուբլին բռիս մեջ՝ ես պտտվեցի քաղաքում: Կենտրոնական շատրվանն առատ խշշոցով փշրվում էր: Կառավարական տան դեմ հյուրանոցի շենքը զարդարվում ու զարդարվում էր շինարար զնգոցների մեջ: Ես նայեցի հյուրանոցի շենքին, նայեցի կառավարական տանը և դարձյալ նայեցի հյուրանոցի շենքին, և հյուրանոցի շենքի ծանր կամարները մտածում էին կառավարական տնից էլ գեղեցիկ լինել, իսկ կառավարական տունը կեցած էր որպես կատարելություն և հյուրանոցի շենքին ասում էր՝ եղիր, և մյուս շենքերին ասում էր՝ եղեք:

Ես պտտեցի քաղաքում:

Նկուղային զով դահլիճում տղաները մարզվում էին: Նրանց մեջ բռնցքամարտի չեմպիոն կար: Մարզիչը վստահ էր, որ նրանց մեջ չեմպիոն կա: Մարզիչը գիտեր, որ չեմպիոնը նրանց մեջ է, բայց դեռ չգիտեր, թե ով է չեմպիոնը: Ով որ քրտներ: «Աշխատե՛ք, աշխատե՛ք,— ասում էր մարզիչը,— մի՛ կանգնեք: Ձա՛խըդ, ձախո՛վ, ձախո՛վ»,— ցատկոտում էր մարզիչը:— Մատով նա ինձ ներս կանչեց: Այո, ինձ: Ձեռքի շարժումով՝ դարձյալ ներս կանչեց: Ես կարմրեցի, պատուհանի ճաղերից հեռացա, դանդաղ թափառեցի քաղաքում:

Փողոցը լցվեց աղջիկներով: Բժշկական ուսումնարանի, բժշկական ինստիտուտի, բանասիրության բաժնի դասերը վերջացել էին, և մայթերը, փողոցը, խաչմերուկները լցվեցին աղջիկների շողք ու հրճվանքով, արևային ակնոցներով, զգեստների հրճվանքով, իրենց շատությամբ, իրենց լավությամբ, իրենց հմայքով:

— Ըմբո՛ստ,— ասացի ես իմ հորաքրոջ տղային,— երեք ռուբլի փո՛ղ տուր:

— Ինչի՞դ է պետք,— ասաց նա:

— Եթե երեք ռուբլի փող տաս՝ ութ ռուբլի կունենամ,— ասացի ես,— եթե ութ ռուբլի ունենամ՝ կգնամ Դիլիջանով գյուղ:

— Ահնիձո՞ր,— ոչ էն է հարցրեց, ոչ էն է հեգնեց նա:

— Ահնիձոր,— ասացի ես:

— Ի՞նչ կա Ահնիձոր,— հարցրեց նա:

— Դու ինչո՞ւ էիր լաց լինում,— ասացի ես:

— Ես լաց եղա՝ պրծավ,— հանգիստ ասաց նա,— դո՛ւ էլ լաց եղիր՝ թող պրծնի:

— Խոնա՛րհ, երեք ռուբլի փո՛ղ տուր,— ասացի ես,— երեք ռուբլի փո՛ղ տուր, Ըմբո՛ստ, Պրոմեթեո՛ս, Հսկա՛, Հրե՛շ:

— Չունեմ,— ասաց նա,— ունեմ՝ վաղվա համար է, վաղը,— ասաց նա,— ընդամենը վաղը, երբ արդեն մեծ լինենք, էդ փողերը մեզ պետք են գալու:

— Բայց հիմա ինչո՞վ գնամ Դիլիջան,— ասացի ես:

— Մի՛ գնա Դիլիջան,— ասաց նա:

— Գնում եմ,— ասացի ես:

— Է՜, գնա՛,— ասաց նա:

— Փողս քիչ է, ինչո՞վ գնամ:

— Գնացքով,— ասաց նա:— Գնացքի համար քիչ չի, որ ուզենաս՝ ծծակ էլ կառնես:

— Ավտոյով՝ Դիլիջանով մոտիկ է: Դիլիջանից դենը սարեր են, ի՞նչ գնացք, ի՞նչ ծծակ:

— Ծծակ,— ասաց նա,— ծծիչ, սոսկա, որովհետև դեռ երեխա ես:

— Դու արդեն մեծ ես,— ասացի ես,— բիտկի, կատլետ, գունավոր թել, չախոբիլի, երկու կաթիլ արտասուք:

Հետո ես կանգնել էի քաղաքի գլխին, սպասում էի, որ անցնող մեքենաներից որևէ մեկն ինձ վերցնի հինգ ռուբլով, և ինձ թվում էր, թե այն ժամանակ, երբ կառավարական տունն ինձ դուր էր գալիս և հյուրանոցի ծանր կամարներն ինձ դուր էին գալիս, և այն ժամանակ, երբ բռնցքամարտիկների թեթև խոնավությունն ինձ դուր էր գալիս, և այն ժամանակ, երբ մայթերն ու խաչմերուկները լցվեցին աղջիկներով, ես դավաճանում էի և կրկին դավաճանում էի և դարձյալ դավաճանում էի սարերին, և պառավ շունը նվում էր, է՜, երազում տեսածի-չտեսածի չափ հեռու մի անհայտությունում լքված... Թող նվա, նվա ու սատկի:

Մի մեքենա կանգ առավ: Ես մոտեցա հարցնելու, թե կտանի՞ ինձ հինգ... և իմ մազերից, իմ ծոծրակից, իմ ձեռքերից ու թևատակերից բռնած ներս քաշեցին, դրեցին իրենց տակ ու նստեցին վրաս ֆիզկուլտուրայի դասատուն, ուսմասվարը, իմ հորաքրոջ տղան և էլի մի քսան հոգի:

— Վայրենինե՛ր,— աղաղակեցի ու թպրտացի ես:

Ինձ վրա նրանք լուռ էին, հետո իմ հորաքրոջ տղան ծիծաղեց.

— Քառանց Վանուն կարիտել էր:



— Կարոտ է, հո սովածություն չի՞ կանգնի,— եկավ ուսմասվարի ձայնը,— մի քիչ տղամարդկային համբերություն ունեցիր՝ կանգնի:

— Վայրենինե՛ր, բռինե՛ր, գյուղացինե՛ր, անհասկացողնե՛ր, բա՛ց թողեք ինձ,— աղաղակեցի ու թպրտացի ես:

Կատակ եմ անում: Կեղտոտ նստատեղի փոշին հիմա իմ ռունգերում չի, իմ ծոծրակը չի հիշում իմ հորաքրոջ որդու մկանուտ նստուկի պնդությունը, և արդեն կատակ եմ անում: Բայց հենց այդ պինդ նեղվածքում էր, որ ես զգացի բաց սարերի սահմանկոտոր ազատությունը:

— Բա՛ց թողեք— թպրտացի ես:— Կորե՛ք իմ վրայից, զավադսկոյ շանորդինե՛ր:

— Ուժեղ է,— ասաց ֆիզկուլտուրայի դասատուն,— ինչո՞ւ չի բռնցքամարտի գալիս:

— Տե՛ս,— ասացին նրանք բժշկական ինստիտուտի մոտ,— եթե գլուխդ ցավում է՝ էս աղջիկներին ասենք բուժեն:

— Եթե ցավող ատամ ունես՝ տանենք էս աղջիկները հանեն,— ասացին նրանք բժշկական ուսումնարանի մոտ:

— Ատամը՝ ոչինչ,— ասացին նրանք,— ատամը գյուղում էլ են հանում:

— Գյուղում աքցանը գցում են ու կոպիտ քաշում,— ասացին նրանք,— կամ դուրս կգա, կամ կջարդվի: Իսկ սրանք ցավազրկում են:

— Գիտե՞ս ոնց են ցավազրկում,— ասացին նրանք,— խաժ աչքերով նայում են՝ ու անջատվում ես: Մեկ էլ տեսնում ես ատամդ չկա, իսկ իրենք նայում են խաժ աչքերով:

— Սա տպարանի շենքն է,— ասաց իմ հորաքրոջ որդին,— եթե բանաստեղծ դառնաս ու սարերի. մասին բաներ գրես, էստեղ են տպելու:

— Սարե՞րը,— ոռնացի ես:

— Այո՛, սարե՛րը,— ասաց նա,— հետո՞ ինչ:

— Վանի՛ն,— ոռնացի ես,— Սսատո՛ւրը,— ոռնացի ես,— Ների՛ն, կարկո՛ւտը, շնե՛րը...

— Շները ես էլ գիտեմ, հետո՞ ինչ։

— Դու ոչինչ էլ չգիտես,— հեկեկացի ես։

— Գիտեմ,— ասաց նա,— շները գիտեմ, լսի՛ր։

— Դու մենակ չախոբիլի գիտես,— խեղդվեցի ես։

— Լսի՛ր,— ասաց նա,— շներն էլ գիտեմ։ Լսո՞ւմ ես, շների մասին եմ պատմում։

— Դու քո գունավոր թեյի՛ մասին պատմիր։

— Չէ՛, շների՛ մասին եմ պատմում, լսի՛ր։ Չորից, է՜, ուրթը չէր երևում։ Շիշթափը մի փափախի չափ էր երևում։ Գնա ու գնա։ Մոռ էի քաղել, ամանս լցվել էր, գնում էի ուրթ։ Մոռ էի կերել, սիրտս խառնում էր ու քաղցած էի։ Արևը։ Խփում ու տափակում էր գետնին։ Գնա ու գնա։ Շիշթափը մի փափախի չափ էր երևում։ Մի չորս-հինգ օր առաջ անձրև էր եկել, որ սարերում կարկուտ դրեց՝ էն անձրևը։ Քաղցած, մոռին որ նայում եմ՝ սիրտս խառնում է։ Մեկ էլ տեսնեմ կարմիր մի շուն՝ կողքին մի յափնջի։ Ասացի լավ է, հովիվն ուրեմըն մոտերքում կլինի, ձեռքին հաց կունենա։ Ոչ մի հոտ ու հովիվ էլ չկա, ամայի բաց լանջերն են ու էդ մի կարմիր շունը՝ յափնջու մոտ։ Քաղցած, փորը կպել է մեջքին։

— Վանու Բոքը։

— Այո՛, Վանու Բոքը։ Վանին ուրեմն անձրևի տակ է ընկել, յափնջին ծանրացել, ծանր բեռ է դարձել։ Դե հիմի արի քարշ տուր էդ բեռը, է՜, ուրթ, Շիշթափը մի փափախի չափ է երևում։ Վանին յափնջին թողել է էդտեղ, որ չորանա, շունը մնացել է յափնջու մոտ։ Սարի չորս-հինգ օրվա տժժան արև՝ յափնջին չորացել է, շունը էդ արևի ու էդ քաղցի մեջ նիհարել, հատել է, գլուխը թաթերին՝ աչքերի ճեղքից հազիվ նայում է ու ես ինչ իմանամ տեսնո՞ւմ է, չի՞ տեսնում։ Նայում եմ էդ սև, շոգ յափնջուն, նայում եմ ուրթին, ուրթն էնքան է հեռու, որ ալարում եմ։ Դու ի՞նչ կանեիր։

— Յափնջին կվերցնեի՝ շունը ետևիցս կգար ուրթ,— ասացի ես։

— Եթե շունը յափնջին տար, եթե կարողանար ետևիցդ գալ։

— Էդ շանն ու իրա ախպորը ես եմ թուրքից գողացել։

— Բայց Վանին դու չես,— ասաց իմ հորաքրոջ տղան Երևան քաղաքի մեր հանրակացարանում։ Լուսամուտից երևում էր սպորտային լողավազանը։ Մի աղջիկ հանվում էր, դանդաղ հանվում էր։— Ծանոթ ունեմ,— ասաց իմ հորաքրոջ տղան,— գնա՞նք լողանալու։

— Էդ շանն ու իրա ախպորը թուրքից Վանին ու ես միասին ենք գողացել,— ասացի ես։

— Հետո՞ ինչ, դրանք հիմա միայն Վանու շներն են։ Թուրքը գնացել մտածել, մտածել ու փոշմանել էր, եկավ կանգնեց Վանու գլխին, թե՝ «էրգու օխցար դուր»։ «Ես քեզ ինչի՞ համար երկու ոչխար տամ»։ «Թուլեքիս հախը ցորս օխցար դուր»։ «Ես բե՞կ եմ, ես խա՞ն եմ, քեզ որտեղի՞ց չորս ոչխար տամ»։ «Դե որ օխցար ցիգա՝ թուլեքս դուր»։ «Հրեն շներդ, գնա տար»։ Ո՞նց տանի, խեղճ թուրքին քիչ էր մնում խեղդեին շները։ «Թուլեքս դուր»։

— Չգիտեմ,— ասացի ես։— Վանին յափնջին վըրաններն էր գցել, թուրքի հետ խոսում էր, ես շապիկիս տակ առա ու փախա։ Սառը դունչները քսվում էր փորիս։

— Այո՛։ Ասացի, յափնջին տանեմ ուրթ, շունը ետևիցս թող գա։ Հիմա մոտենում եմ. շունը տեսնո՞ւմ է, չի՞ տեսնո՞ւմ. հասկանո՞ւմ է, չի՞ հասկանում, հոգնա՞ծ։ Հեռու գվվոց է գալիս, ասում եմ, գետակի մռմռոցն է կամ ականջներս են քաղցից գվվում։ Կռացա, որ վերցնեմ՝ շունը կանգնեց ու հաչեց։ Հաչոցի ձեն չկար, փորում հազի՜վ «ավ»՝ բերանը լուռ բացեց ու փակեց, ետևը գետնից չի կարողանում կտրել, առջևի ոտքերի վրա օրորվում ու թույլ գոմռում է նվոցի պես։ Ա՛յ շուն, ա՛յ հիմար, ա՛յ ախպեր, ա՛յ անհասկացող, ես եմ, գող չեմ, յափնջին տո՛ւր՝ ուրթ գնանք։ Յափնջին ի՞նչ է, ա՛յ շուն, ա՛յ հիմար, որ կողքին վեր ես ընկել, սատկում ես, վե՛ր կաց, մի կողմի վրա՛ գնա, մի բա՛ն գտիր կեր, ոչ, ընկել է ու էդ բաց, ամայի սարերում ինքն է ու յափնջին, ուրիշ ոչինչ չի ճանաչում։

Աղջիկը հանվելը վերջացրել էր, հիմա կանգնած էր ցածի ոտնակին։ Այդպես կանգնած էր, հետո հանկարծ ոտնեց, բացված, ծանր ու ճկուն՝ մի պահ ճոճվեց ու սուզվեց։

— Չգնա՞նք լողանալու,— ասաց իմ հորաքրոջ տղան։

Եվ քաղաքում ծնված, քաղաքում մեծացած, քաղաքում դաստիարակված աղջկա բացսիրտ մտերմությունը, մի քիչ՝ մի փակ ժպիտի չափ հովանավորող մըտերմությունը հուզիչ էր։ Եվ ավազանի արևոտ մաքրությունը գեղեցիկ էր։ Եվ Հանքավան հովտի շեփորային առավոտներն ու սրսփուն իրիկուններն էին գեղեցիկ, երբ ես ջոկատավար էի, և բարձր դասարանցիների ծղրտուն հրճվանքը, երբ մաքուր առավոտների միջով նրանք գալիս էին դպրոց և ես գնում էի ինստիտուտ։ Եվ ծովն ու ծովափի լույսն էին գեղեցիկ, և օդանավի հզոր տառապանքը, որ սըրահների լուսավոր, թեթև, մաքուր, հարմարին փափկության մեջ չէր զգացվում, գրեթե չէր զգացվում։ Աշխարհը՝ մե՜ծ, լուսավո՜ր, գեղեցի՜կ, Էդիտա Պիեխան զնգալով երգում էր՝ ի՞նչ Վանի, ի՞նչ շուն։ Օդանավից Երևանը-Խճուղին-Սևանը-Դիլիջանը-սարերը մեկ և նույն բռան մեջ էին երևում, իսկ այն պատանին ահա, հինգ ռուբլին ձեռքին, իր համար հոգս էր շինել Երևանից Անհիձոր փախչելը, մրջյունը թմբե լեռներ է անցնելու։ «Արի տանեմ»,— քիթս օդանավի լուսամուտին հպած՝ մտքիս մեջ ասացի ես։

Շիշթափը չէր երևում, ամբողջ լեռնաստանն այնպես փոքր էր, որ անհնար էր տեղավորել այնտեղ այնքան շատ-շատ ու այնպես մեծ-մեծ այդ կանչերը. «Զավե՜ն-հե՜յ-Զահրումա՜ր-Շունն ու՞ր է,— Յափնջու մո՛տ— Յափնջին ո՞ւր է— Հրեն ձորում թողել ե՞մ, թրջվել էր, թողել եմ, թողե՜լ...» Եվ երիտասարդ բանաստեղծների՝ աղջիկների ու տղաների մեր խումբը օդանավի մեջ այնպես անկաշկանդ էր, գեղեցիկ, և ոսկի փարթամ մազերով գերմանուհին այնպես շըռայլորեն էր գեղեցիկ, ու ամոթ էր նրա մոտ և նըրանց մոտ հիշել Զարիկի ու Վանու խեղճ ամուսնությունը։ Բերանը փակ՝ գերմանուհին ծամոն էր ծամում և նայում էր մութ խոշոր ակնոցի ետևից, նայում էր և լուռ ծամում, և իր աննշմար ժպիտի ու խոշոր մութ ակնոցի ետևում նա գիտեր, որ իմ ներսում ուրթերի անքաղաքավարի կանչեր կան, և նա նայում ու լուռ ծամում էր գեղեցիկ մեծ բերանով, և ես կուչ էի գալիս, և նա ժպտում էր մութ ակնոցի ու հաստ շրթունքների ետևում։ Ես ինձ սեղմում, կուչ էի գալիս և ինձ ասում էի. «Սեղմի՛ր, սեղմի՛ր, փոքրացրո՛ւ քո ներսում, ոչնչացրո՛ւ՝ թող չլինեն, սեղմի՛ր, սեղմի՛ր՝ թող նվա՜ն, նվա՜ն ու սատկեն, սեղմի՛ր»։

*(Շարունակելի)*

# Մեր լեռները

(ԷՔՍՊՐՈՄՏ)

ԳԵՎՈՐԳ ԽԱՉԱՏՐՅԱՆ

Ասում են, իբր հրաբուխների
Ուժով են աշխարհ եկել լեռներս...
Իսկ ես ասում եմ՝
Ո՛չ,
Ի՞նչ մեղք ունի
Հրաբուխն այստեղ,—
Երբ հայրենիքս ընդարձակվելու
Ուրիշ ոչ մի այլ ելք չգտնելով՝
Իր հողն ու քարը շատրվանել է
Դեպի անսահման-անհունը երկնի...

# Աշնանային

ԶԱՎԵՆ ԿԱՍՅԱՆ

Ուշ աշուն է, քամու պարից
Պաղել են հանդ, մարգագետին.
Տերևներ են թափվում ծառից,
Սփսփալով ընկնում գետին...
Էլ չեն ծայնում առու, վտակ,
Չեն կարկաչում երգով անուշ,
Աշնան գրկում լեռներ ու հանդ
Խոր քնել են, խաղա՛ղ, մո՛ւշ-մո՛ւշ...
Լեռ ու հանդի քունն է հսկում
Երկնասլաց ու ձիգ բարդին,
Ու փչում է քամին անքուն,
Ջմռան շունչը պահած շուրթին...
Ու փչում է քամին անբեկ,
Անցնում ծառ ու թփի մոտով,
Ազդարարում, թե՝ իմացե՛ք,
Ցուրտ ձմեռ է գալու շուտով...

# Հարյուրամյա կոթող



(«ՍԱՍՈՒՆՑԻ ԴԱՎԻԹ» ԷՊՈՍԻ ԳՐԱՌՄԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

Երկյուղածությամբ թերթում եմ ծոցատետրի չափսեր ունեցող այս գրքույկը և բազմապատկվում է հիացմունքս նրա զարմանալի ճակատագրի նկատմամբ: Գրքի կազմի վրա գրված է. «Գըռոց ու բռոց և Սասունցի Դավիթ կամ Մհերի դուռ», Տրագրեաց Գ. Վ. Սրվանձտյանց: Կ. Պոլիս, 465 էջ, 1874 թ.»:

Հարյուր տարի է անցել և արտաքուստ անշուք այս գրքույկում զետեղված մեր հերոսական էպոսի առաջին պատումին ավելացել են տասնյակ նոր պատումներ, որոնցից շուրջ հիսունը հրատարակված են «Սասնա Ծռեր» խորագիրը կրող երեք չքնեղ հատորներով, իսկ ուրիշ պատումներ էլ դեռ սպասում են իրենց հրատարակության հերթին:

Էպոսի սյուժեներով գրված Հովհ. Թումանյանի, Ավ. Իսահակյանի և շատ ուրիշների պոեմները, պիեսները, քանդակները, բանաստեղծությունները վաղուց արդեն համբավեր են. Հանրության սեփականությունն են դարձել, բայց ուրիշ է մեծավաստակ բանահավաք և բանագետ Գարեգին Սրվանձտյանցի հարյուրամյա այս պրակը: Այն սկիզբ է, գյուտ, այժմ արդեն սրբազան մասունք:

Գ. Սրվանձտյանցն ինքը այս

հրատարակության առթիվ տարակուսանք ուներ, բայց ժամանակի հայ պարբերական մամուլը ջերմորեն արձագանքեց և շատ մտավորականներ ողջունեցին այն: Հաջորդ տարին՝ 1875 թ. մեր էպոսի այդ առաջին պատումն արդեն թարգմանված էր ռուսերեն, հետո նաև գերմաներեն:

Գ. Սրվանձտյանցի սկսած գործը շարունակեցին մեր ազգային մշակույթի ականավոր մի շարք երախտավորներ, շատերն արձագանքեցին «Գրոց-բրոց»-ի վերաբերյալ «Մշակ»-ում տպված Րաֆֆու հոդվածին, որով նա կոչ էր անում գրի առնել և հաղորդել իրենց տեղերի ժողովրդական ավանդույթները, որքան կարելի է պարզ կերպով և այն ճշտությամբ, ինչպես խոսում է ժողովուրդը:

Հայ ժողովրդի հերոսական էպոսը՝ «Սասունցի Դավիթը» այսօր արդեն ոչ միայն մեր երկրում, այլև համաշխարհային ճանաչում գտած այն երկերից է, որով հպարտանում են աշխարհի ժողովուրդները իբրև մարդկության գեղարվեստական զարգացման, հումանիզմի, հայրենասիրության, ազատության ու արդարության գաղափարների մարմնավորման հավերժական կոթողի:

Դեռևս Հայրենական մեծ պատերազմից առաջ, 1939 թ. սեպտեմբերին, երբ Եվրոպան արդեն գտնվում էր նոր բռնկված Երկրորդ համաշխարհային պատերազմի բոցերում, Սովետական Միության բոլոր ժողովուրդները տոնեցին «Սասունցի Դավիթ» էպոսի 1000-ամյակը: Այդ համաժողովրդական տոնակատարությունը նոր լիցք տվեց հայ էպոսագիտությանը, ընդարձակեց նրա ճանաչման շրջանակները: Ռուսը, վրացին, ուկրաինացին և մեր երկրի մյուս ժողովուրդները «Սասունցի Դավիթը» կարդացին իրենց մայրենի լեզվով: Հայրենական մեծ պատերազմի ճակատներում մարտնչող հայ հերոսներին անվանում էին Սասունցի Դավթի ժառանգներ, ստեղծվեց «Սասունցի Դավիթ» անունը կրող տանկային շարասյուն:



Երևանի կայարանամերձ հրապարակում բարձրանում է հայ ժողովրդի առաքինությունները մարմնավորող էպիկական հերոսի՝ Սասունցի Դավթի փառահեղ արձանը: Այս ամենը վկայում են, որ մեր ժողովրդի ստեղծած էպոսը վիթխարի դեր է կատարում նաև մեր օրերում՝ դաստիարակում մարդկության վսեմ երազանքների իրականացման ոգով, հերոսականությամբ, արդարամտությամբ, սխրանքների մղում տալիս:

Ահա թե ինչու հարյուրամյա այս գրքույկը այսքան թանկ է մեզ համար և այն կյանքի կոչող Գարեգին Սրվանձտյանցը՝ երախտագիտության արժանի:

Գարեգին Սրվանձտյանցը ծնվել է 1840 թ. դեկտեմբերի 12-ին Վանում, մահացել է 1892 թ.: Նրա ժամանակակիցները և մասնավորապես կենսագիր Գ. Տերենցը վկայում են, որ վաղ մանկությունից նա ուշիմ էր, հաճույքով էր ունկնդրում քաղի «մամիկների» և «խալիվորների» պատմածները՝ հեքիաթներ, առասպելներ, կատակաբանություններ, առած-ասացվածքներ, համով-հոտով խոսք ու զրույցներ:

Ուսումնառությունից հետո նա դարձավ հոգևորական, 1864 թվականին ձեռնադրվեց վարդապետ, քսան տարի անց՝ եպիսկոպոս: Նա պաշտոնի բերումով եղավ Արևմտյան Հայաստանի գավառների մեծ մասում և ամենուրեք զբաղվեց ավելի շատ աշխարհիկ գործերով:

Նա գրեց ակնարկներ ու պատմական ուղեգրություններ, դպրոցական ընթերցարան-դասագրքեր, ցասումով ու մորմոքով լի հոդվածներ ու զեկուցագրեր, ժողովրդական նիստուկացի, վարքուբարքի հարազատ նկարագրություններ, հավաքեց ժողովրդական բանահյուսության շատ երկեր՝ զրույցներ, առած-ասացվածքներ, առասպելներ, հեքիաթներ և այլ նյութեր:

«Սասունցի Դավիթ»-ը նրան պատմել էր Մշո դաշտի Առնիստ գյուղի բնակիչ Կրպոն, որի հենց բարբառով էլ տպագրվեց Սրվանձտյանցի հավաքած ազգագրական բանահյուսական նյութերի առաջին ժողովածուում՝ «Գրոց ու Բրոց և Սասունցի Դավիթ կամ Մհերի դուռ» պրակում, որին հետևեցին այլ ժողովածուներ՝ «Հնոց և նորոց» (1874 թ.) «Մանանա» (1876) «Թորոս աղբար»:

Այդ ժողովածուներով անդառնալի կորստից փրկվեցին մեր ժողովրդի շատ հոգևոր գանձեր, դրանց մեջ (հատկապես «Թորոս աղբարում») կան մեր ժողովրդի կյանքի ու կենցաղի ճշմարիտ նկարագրություններ, որոնք ունեն գիտական մեծ նշանակություն, գեղարվեստական և ճանաչողական մեծ արժեք:

Գրեթե մի ամբողջ հազարամյակ մեր էպոսը ապրել է բերանացի, անցել շուրթից-շուրթ, տարածվել գավառից-գավառ, անընդհատ հարստացել, անընդհատ խմբագրվել ու սրբագրվել ժողովրդի մարդկանց՝ ասացողների կողմից, ճղկվել ու ստացել այն մոնումենտալ տեսքն ու ազնիվ բովանդակությունը, որով հիանում ենք թե՛ մենք, թե՛ օտարները:

Մեր էպոսի մասին առաջին կցկտուր տեղեկություններն են

# ՍԻԲԻՐՅԱՆ ԱՐՋԻ ՔՈԹՈԹԸ

ԹՈՐԳՈՄ ԳԵՎՈՐԳՅԱՆ



Մեր փոքրաթիվ արշավախումբը տասնյակ կիլոմետր անցավ տայգայի կուսական անտառով և դուրս եկավ մի ընդարձակ մորուտ: Մենք սաստիկ ծարավ էինք և ագահությամբ վրա պրծանք արքայամորու հյութեղ ու շատ խոշոր պտուղներին... Ուտում էինք ախորժակով, բուռ-բուռ և, տարված դրանով, ուշ նկատեցինք, որ մեր դիմաց՝ մոտ երկու հարյուր քայլի վրա մի քանի արջ մեզ պես կանգնած անուշ են անում մորու պտուղները:

Մերոնք անմիջապես կրակեցին արջերի վրա և մի արջ սպանեցին: Մյուսները փախան, անհետացան: Մենք զգուշությամբ մոտեցանք սպանված արջին: Նա անշուշտ անմիջապես սպանվել էր, իսկ նրա կողքին, կարծես շվարած, պպզած էր մի շատ փոքրիկ քոթոթ՝ սպանվածի ձագն էր: Մեկն անմիջապես գիրկն առավ որբուկին, իսկ արջի մարմինը կապեցին մի երկար ձողի և ուսերին առած փութով վերադարձանք մեր կացարանը: Ամբողջ ճանապարհին մեր սպասածին հակառակ, քոթոթը հանգիստ պահեց իրեն, ինչպես երևում է՝ չէր հասկանում իրեն պատահած դժբախտությունը և կարծում էր, թե պարզապես հետևում է մորը:

Արջի մարմինը հանձնեցինք ճաշարանին, որպեսզի կերակուր պատրաստեն, իսկ քոթոթին վերցրեց խոհարարուհին ու փաղաքշական խոսքեր ասելով, սկսեց նրան կաթով կերակրել:

Քոթոթը, որին անմիջապես Միշկա անունով կնքեցին և ինքն էլ այդ անունը շատ շուտով ընդունեց, դարձավ ամենքի զբվարճության առարկան: Երբ հյուրասիրում էին, գոհունակությամբ ընդունում էր:

Նախաճաշին, կեսօրին և ընթրիքին, երբ զանգը տալիս էին, Միշկան որտեղ էլ որ լիներ, ինչով էլ զբաղված լիներ, անմիջապես ամեն ինչ թողնում ու վազում էր ճաշարան, նստում սեղանի շուրջ իրեն հատկացված տեղն ու սպասում իր բաժին կերակուրին: Ոչ ոք չէր գրավում Միշկայի տեղը, եթե նույնիսկ սեղանի շուրջը նստելու ազատ տեղ չէր լինում:

Ընդհանրապես Միշկան արդեն բավականին երես էր առել, շարունակ չարաճճիություններ էր անում և խրախուսվում բոլորից, հատկապես խոհարարուհուց: Երբ նրա ճաշը մի քիչ ուշ էին մատուցում (ոմանք այդ անում էին դիտմամբ, որպեսզի գրգռեն Միշկային), նա անհանգըս-

---

տալիս 16-րդ դարի պորտուգալացի երկու ճանապարհորդ՝ Անտոնիո Տեներեյրոն և Մեստրե Աֆոնսոն իրենց ճանապարհորդական նոթերում: Հայաստանով անցնելիս նրանք լսել են մեր էպոսի պատումները և հակիրճորեն վերապատմել իրենց ուղեգրություններում: Պորտուգալացի ճանապարհորդների տեղեկությունները ուշագրավ են հատկապես նրանով, որ ցույց են տալիս էպոսի տարածումը Սասունում, Խլաթում, Վանում, Բիթլիսում և Հայաստանի այլ գավառներում: Արևմտյան Հայաստանի որոշ տեղանունների բացատրության առիթով էպոսի մասին կցկտուր տեղեկությունների հանդիպում ենք հայ աշխարհագրագետ Ղ. Ինճիճյանի «Աշխարհագրություն չորից մասանց աշխարհի» գրքի 1806 թ. վենետիկյան հրատարակության առաջին մասում: Բայց «Սասունցի Դավիթ» էպոսի իսկական հայտնագործողը, անհայտությունից լույս աշխարհ հանողը եղավ հայ ազգագրության ու բանագիտության մեծ երախտավորը, հայ էպոսագիտության հիմնադիր Գարեգին Սրվանձտյանցը, հայ անմահների շարքում իր պատվավոր տեղը գրաված մի անձնավորություն, որին մեծ Թումանյանը անվանել է «մեր անուշ, հայրենախոս բանաստեղծը»:

Ռ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
դոցենտ

տանում էր ու չխչխկացնում ամանը, ինչպես անում էին ճաշողներից ոմանք: Այդպիսի դեպքերում ճաշողներից շատերը ամեն կողմից պահանջում էին չգրգռել խեղճ որբուկին, առաջին հերթին նրան սպասարկել...

Մի անգամ նոր աշխատակիցներից մեկը, որը դեռ ոչինչ չգիտեր Միշկային հատկացված հատուկ տեղի մասին, ճաշարանում նստել էր նրա տեղը, և երբ Միշկան մրթմրթալով մոտեցել էր նրան իր տեղը գրավելու, նորեկը աքացի հասցնելով, կոպտաբար հրել էր Միշկային: Միշկան, որը մինչ այդ դեռ ոչ մեկի կողմից վիրավորանք ու կոպտություն չէր տեսել, սաստիկ վիրավորվեց և թքելով ու մրթմրթալով դուրս վազեց ճաշարանից ու բարձրացավ ճաշարանի բակում եղած մոտ երեսուն մետր բարձրության խեժափիճի ծառը:

Խոհարարուհին կշտամբեց անտաշ նորեկին, ապա գնաց կանգնեց ծառի տակ և Միշկային սկսեց խնդրել, որ իջնի, բայց քոթոթը չիջավ ծառից: Ճաշարանից դուրս եկավ մեկը, մյուսը, խմբովին սկսեցին կանչել, հորդորել Միշկային, որ ցած իջնի, դարձյալ՝ ապարդյուն: Բարի խոհարարուհին մի պընակ ճաշ ձեռքին նորից եկավ կանգնեց ծառի տակ, կերակուրը գդալով խառնելով վեր էր բարձրացնում, ցույց տալիս Միշկային, որպեսզի գրգռվի նրա ախորժակն ու նա իջնի ծառից, սակայն, քոթոթը համառում էր: Նա կուչ էր եկել ճյուղերի արանքում ու ներքևից նայողներին թվում էր, թե ահա գլորվելու է երկնահաս ծառից և ջախջախվելու է: Խոհարարուհին շատերին խնդրեց, աղաչեց, որպեսզի մեկնումեկը բարձրանա ծառը, գրկի ցած բերի խեղճ որբուկին, բայց ոչ ոք հանձն չառավ: Ծառը բարձր էր ու լերկ, վախենում էին...

Իսկ Միշկան, ինչպես երևում էր, շատ լուրջ վիրավորվել էր, և արջավարի էլ քեն պահեց՝ երեք օր ու գիշեր անօթի-ծարավ մնաց ծառի վրա...

Նորեկների մեջ մեկը կար, որն իր ասելով, ժամանակին աշխատել էր հայտնի Դուրովի մոտ: Նա իմանալով Միշկայի պատմությունը, ընդառաջեց խոհարարուհուն և բարձրացավ ծառը: Այնտեղ նա ինչ ասեց, ինչպես համոզեց Միշկային՝ իհարկե ոչ ոք չիմացավ, բայց ի վերջո նրան գիրկն առած իջավ ծառից: Ամենքը ծափահարեցին, ուռա կանչեցին նրա պատվին, իսկ խոհարարուհին չգիտեր ինչպես իր շնորհակալությունը հայտներ, պատվեր Միշկային ծառից իջեցնող հերոսին, որին ամենքը պարզապես «Դուրով» մականունը կպցրին ու նա այնուհետև այդ անունով էր ճանաչվում շինարարությունում...

Խեղճ Միշկան բավական լղարել էր, փրթոտել և ինչ կասկած, որ սաստիկ ծարավել ու սովածացել էր: Ագահաբար խժռում էր խոհարարուհու մատուցած կերակուրներն ու կաթը...

Այդ օրվանից Միշկան մտերմացավ իրեն ծառից իջեցնող այդ «Դուրովի» հետ և ինչպես հավատարիմ շուն՝ շարունակ նրա հետ էր լինում:

«Դուրովը» իր ազատ ժամերը ամբողջովին անցկացնում էր Միշկայի հետ, նրան վարժեցնում էր կրկեսային զանազան խաղերի, և հանգստի օրերին ճաշարանում հավաքված ժողովուրդը դիտում էր Միշկայի զվարճալի ելույթները...

Ժամանակ անց «Դուրովը» նրան սովորեցրեց նույնիսկ աշխատել: Երբ գետանավը գալիս էր կանգնում մեր կացարանի մոտ գտնվող նավահանգըստում բեռնաթափվելու, մենք զարմացած դիտում էինք, թե ինչպես Միշկան «Դուրովի» հետ մասնակցում էր նավը բեռնաթափելու աշխատանքներին: Փոքրիկ արկղները կամ պարկերը «Դուրովի» օգնությամբ ուսին առած նեղ նավասանդուղքի վրայով արագ-արագ իջնում էր ցամաք և բեռը հասցընում պահեստը, որտեղ նրան անպայման հյուրասիրում էին որևէ քաղցրավենիքով: Այդ ամենը հետաքրքիր ու զվարճալի էր, բայց վատն այն էր, որ Միշկան որտեղ որ լսեր ճաշարանի զանգի ձայնը, անմիջապես իր վրայից ցած էր նետում բեռն ու վազում դեպի ճաշարան, գրավում իր տեղը սեղանի շուրջը: Պատահում էր, որ նրա շալակի պարկը կամ արկղը ընկնում ջարդվում էր կամ ավելի վատը՝ ընկնում էր գետը և «Դուրովը» մի քանի հոգու օգնությամբ, մեծ դժվարությամբ կարողանում էր գետից հանել բեռը:

Մենք վստահ էինք, որ «Դուրովի» դաստիարակչական աշխատանքները իզուր չեն անցնելու և ի վերջո Միշկայից դուրս կգա մի կրկեսային վարժ արտիստ...

Բայց այլ վերջավորություն ունեցավ այս պատմությունը:

Այդ օրերին մայրուղում աշխատելիս «Դուրովը» ունեցավ աղեոլորում, ուստի նրան անմիջապես դըրին սայլին և ուղարկեցին Տայշեթի հիվանդանոցը՝ վիրահատության:

Այդ երեկո էլ Միշկան սովորականի պես ընդառաջ գնաց մայրուղուց վերադարձող բանվորներին: Երբ ամենքը եկան անցկացան, իսկ «Դուրովը» չերևաց, քոթոթը սկսեց անհանգստանալ, ջղայնանալ ու, երբ մութն ընկավ, վերադարձավ ճաշարան և բոլորովին ուշադրություն չդարձնելով իր ճաշով լեցուն ափսեին, սկսեց քունջ ու պուճախը հոտոտել, դեսուդեն ընկնել, ապա դուրս եկավ փողոցն ու ամենայն արագությամբ ման եկավ բոլոր հան-



բակացարաններր, «Դուրովի» անկողնու մոտ երկար կանգ առավ, հոտոտեց ամեն կողմից ու մրթմրթալով դուրս գալով փողոց, արագ գնաց դեպի խեժափիճու ծառն ու մագլցեց նրա վրա:

Մինչև ուշ գիշեր շատերը զբաղվեցին Միշկայով, ամեն կերպ ուզեցին նրան իջեցնել ծառից, բայց ոչ ոքի չհաջողվեց, և մարդիկ ցրվեցին, գնացին հանգստանալու... Բարի խոհարարուհին այդ ժամանակ արդեն հեռացել էր մեզանից, այլապես գուցե նրան հաջողվեր ցած բերել Միշկային:

Միշկայի այդ քայլը, այսինքն ծառ բարձրանալը, մարդիկ բացատրեցին այսպես: Նա անշուշտ չէր մոռացել, որ իր հետևից ծառ էր բարձրացել իր սիրելի մարդը, և այժմ էլ հույս ուներ, որ նա, ուր որ է, դուրս կգա ու կբարձրանա իր մոտ...

Բայց այդ միայն ենթադրություն էր...

Լուսաբացին, ով որ շուտ էր վեր կացել, անմիջապես նայել էր ծառի կատարին, տեսել՝ Միշկան չկա: Նրան չգտան ճաշարանում կամ այլ տեղ:

Նրա հետքը գտան Տայշեթի ճամփի վրա: Ինչպես երևում էր, նա մեծ արագությամբ վազքով գընացել էր դեպի Տայշեթ: Այդ հաստատվում էր նըրանով, որ Միշկայի ոտնահետքերը իրարից շատ հեռու էին ընկած խոնավ գետնի վրա: Բացի դրանից Տայշեթի կես ճանապարհին գտնվող Նևելսկայա կայարանի հեռախոսավարից իմացվեց, որ մի քոթոթ գիշերով անցել էր իրենց շենքի կողքով:

Իսկ հետո հայտնի դարձավ, որ երբ «Դուրովի» դիակը հիվանդանոցից հուղարկավորում էին դեպի գերեզմանոց, մի քոթոթ վազելով հարձակվել էր հուղարկավորողների վրա, սարսափեցրել նրանց և նրանցից մեկը տեղնուտեղը ատրճանակով սպանել էր գազանին...

Այսպիսի տխուր վախճան ունեցավ Միշկայի կարճատև կյանքը:

Ըստ ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ



# Ճշմարտությունն ու սուտը

(Ի. Ֆեֆերից)

ԽԱՉԻԿ ՀՐԱՉՅԱՆ

Այնտեղ, որտեղ ամեն մի բան
Չափվում է լոկ ոսկու պարկով,
Ճիշտը քայլում է միշտ բոբիկ,
Սլանում է սուտը կառքով:

Սուտը այնտեղ ճշմարիտից
Միշտ առաջ է, զուգված, կոկիկ,
Բայց կհաղթի, հանգի՛ստ կացեք,
Ճշմարտությունը մեր բոբիկ:

# Թիթեռը

ԱԼԵՔ ԽԱՉՈՒՆՑ

Վերջին տերևն է պոկվում ծառերից,
Աշունն իր վերջին կրակն է մաղում,
Նստած մի դալուկ ծաղկի թերթերին՝
Թիթեռն իր վերջին խաղերն է խաղում:

Չի մրսում, մի նուրբ մուշտակ կա հագին,
Դեղին մուշտակ է՝ նախշ արած սևով,
Երկար ժամանակ չի լքում ծաղկին՝
Թիթեռն արև՜ է հավաքում թևով...




*Մոսկվայի 681-րդ դպրոցի Օլեգ Կոշևոյի անվան դրուժինայի պիոներների և ԳԴՀ-ի Բեռլին քաղաքի Օլեգ Կոշևոյի անվան դպրոցի պիոներ-թելմանականների դիմումը՝ ուղղված սոցիալիստական երկրների պիոներներին*

Թանկագի՛ն ընկերներ:

Մենք ուրախանում ենք, որ կարող ենք հանգիստ սովորել, խաղալ ու երազել: Մեզ համար բաց են դպրոցների ու պալատների, մարզադաշտերի ու այգիների, գրադարանների ու թատրոնների դռները:

Բայց մենք գիտենք, թե ինչպիսի թանկ գնով է ձեռք բերվել մեր երջանկությունը: Մինչև օրս էլ երկրի վրա կան զարհուրելի պատերազմի առաջացրած վերքերը: Պատերազմը միլիոնավոր մարդկանց կյանք խլեց:

Ազնիվ մարդկանց հիշողության մեջ ընդմիշտ մնացին երկրի խաղաղության, մեր ժողովրդի լուսավոր ապագայի համար պայքարող մարտիկների անունները:

Մատաղ սերունդը այսօր շնորհակալություն է հայտնում այն բոլոր մարդկանց, ովքեր երջանիկ մանկություն նվիրեցին մեզ:

1975 թվականի մայիսի 9-ին լրանում է հիտլերյան ֆաշիզմի դեմ տարած հաղթանակի 30-ամյակը:

Մենք՝ Սովետական Միության հերոս կոմերիտական Օլեգ Կոշևոյի անվան դրուժինայի պիոներներս, դիմում ենք ՍՍՀՄ, ԳԴՀ և բոլոր սոցիալիստական երկրների պիոներներին: Մեր ուսմամբ, պիոներական գործերով ու արարքներով ապացուցել ենք, որ մենք արժանի փոխարինողներ կլինենք աշխատանքի և պայքարի հերոսներին:

Կանցնենք սովետական բանակի՝ ազատագրողի հերոսական ճանապարհներով, ազգային միավորումների մարտական գործողությունների, հակաֆաշիստական ընդհատակյա և դիմադրության շարժման ուղիներով: Կարձանագրենք հակաֆաշիզմի դեմ պայքարողների հիշողությունները, կհավաքենք պատերազմական մասունքները, կստեղծենք փառքի թանգարաններ ու անկյուններ: Սոցիալիստական երկրները ֆաշիզմի լծից ազատագրվելու 30-ամյակի առթիվ պիոներական դրուժինաներում ու ճամբարներում տոներ կանցկացնենք, ինտերնացիոնալ հանդիպումներ՝ «Ողջո՛ւյն, հաղթանակ» նշանաբանով:

Հոգատարությամբ և ուշադրությամբ կշրջապատենք մեր երջանկության համար պայքարողներին, նրանց հավատարիմ ընկերներն ու օգնականները կլինենք:

Մեծ հաղթանակի տարեդարձի նախօրյակին մենք կոչ ենք անում ձեզ՝ մեր հասակակիցներ, ամրապնդե՛լ խաղաղությունն ու համերաշխությունը:

Ուս-ուսի կանգնենք մեր հայրերի ու եղբայրների հետ և ասենք. «Թող մի՛շտ խաղաղություն լինի»:

Կեցցե՛ մեր բարեկամությունը:

Ողջո՛ւյն, հաղթանակ:

*Մոսկվայի 681-րդ դպրոցի Օլեգ Կոշևոյի անվան պիոներական դրուժինա. Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միություն*

*Բեռլինի Օլեգ Կոշևոյի անվան դպրոցի պիոներ-թելմանականներ, Գերմանական Դեմոկրատական Հանրապետություն*

# ՄՏԱԾՈ՞ՒՄ ԵՆ

*Ա. ԲԱՏՈՒՐԻՆ*

Արդյո՞ք թութակները հասկանում են իրենց ասածը: Տիրող կարծիքն այն է, որ չեն հասկանում, բայց այնուամենայնիվ....

1918 թ. Պետրոգրադում մի պրոֆեսոր տանը խոսող թութակ էր պահում: Ձմեռ էր, ընդարձակ բնակարանի միայն երկու սենյակըն էր տաքացվում: Մի գիշեր տանտիրուհին լսեց թութակի աղեկտուր ճիչը՝ «տա՛րը, տա՛րը»: Զուգեց անկողնուց վեր կենալ, որովհետև ստիպված պիտի



անցներ ցուրտ միջանցքով: Բայց թութակն այնպես տագնապահար ու սուր ճիչ էր բարձրացրել, որ նա ի վերջո գնաց տեսնելու, թե ինչ է պատահել: Պարզվեց՝ թութակի վրա առնետներ են հարձակվել: Նրան այնպես էին կրծոտել, որ փրկելն այլևս անհընար էր: Իհարկե, թութակը չգիտեր «օգնեցեք», «փրկեցեք», «սպանում են» բառերը, բայց իր բառապաշարից ընտրել էր ամենահարմար բառը՝ «տարը»:

Այնպիսի տպավորություն է ստեղծվում, որ մահացու վտանգի պահին թութակը մարդուն օգնության է կանչել:

Իսկ ահա թե ինչ պատահեց իմ սեփական «կենդանաբանական այգում»: Հիմնարկում էի, երբ անսպասելիորեն զանգահարեց իմ հարևանուհին. «Ձեր սենյակում կատարյալ ժխոր է. թութակները գոռում են, կապիկը թակում է վանդակի դուռը: Ան-

# ԱՐԴՅՈՔ ԹՈՒԹԱԿՆԵՐԸ



Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

կասկած ինչ-որ բան է պատահել»:

Վազեցի տուն: Միջանցքում կանգնած, մինչ գրպանումս փնտրում էի բանալին, ականջիս հասավ իսկապես աղեկտուր մի ճիչ՝ «տո՛ւն գնա, գնա՛ քո տունը»: Երբ ներս մտա, տեսնեմ դեղնագլուխ ամազոն Նորան ետ ու առաջ է քայլում դաշնամուրի վրա: Ինձ մոտ բնակվող տասնհինգ թութակներից միայն երկուսին՝ ամազոն Լորային և վարդագույն կակադու Կոկոյին էր թույլատրվում առանց իմ հսկողության շրջել բնակարանում: Նրանք երբեք ոչ ոքի չէին բարկացնում, չէին նստում ուրիշի վանդակին, իրենց հատկացված սահմանից դուրս չէին գալիս: Լորան բարեկամացել էր դեղնագլուխ Ամազոն Նորայի հետ և, հավանաբար, իր բարեկամական զգացումները արտահայտել էր նրա վանդակի դուռը բացելով և նրան ազատ արձակելով:

«Կենդանաբանական այգու» բնակիչները վարժվել էին, որ միայն երկուսը լինեն ազատ, իսկ երբ ազատության մեջ հայտնվել էր երրորդը, անմիջապես սկսել էին մի սարսափելի աղմուկ-աղաղակ: Եվ ամենազարմանալին այն է, որ թռչունները գոռում էին հենց այն, ինչ պետք էր. «Գնա՛ քո տունը»:

Տաշքենդում բնակվող բժիշկ Բորիս Ալեքսանդրովիչ Սիմանովի տանը բնակվում են մոտ 400 թռչուն: Նրանց մեջ կան արի ցեղի խոսող թութակներ: Սերգեյ Օբրազցովի կինոնկարահանող խումբը «Ո՞ւմ է հարկավոր այդ Վասկան» ֆիլմը նկարահանելիս, որոշեց գրի առնել թութակների խոսակցությունը: Բժիշկը միկրոֆոնը ձեռքին մտավ մետաղալարից շինված մեծ վանդակը, որտեղ ապրում էին արիները և փորձեց թռչունների հետ զրույցի բռնվել: Սովորաբար շատախոս թռչունները համառորեն լռում էին: Տանտերը չնկատեց միկրոֆոնի երկար լարի մեջ իր խճճվելը, նա դրա վրա ուշադրություն դարձրեց, երբ ոտքերը ամուր կապված էին: Թութակը բրբջաց ու ծաղրանքով ասաց. «Ըհը՛, ո՞նց է, խճճվեցիր, հա՞»:

Զարմանալի է, որ նա առաջ երբեք այդպիսի բան չէր ասել: Նույն թութակի հետ պատահել է նաև մի ուրիշ հետաքրքրաշարժ դեպք. Բորիս Ալեքսանդրովիչի որդին իր դեռատի կնոջ հետ ծնողներին այցելության է գալիս: Թութակը երկար նայում է անծանոթ կնոջը և հետո մռայլ հարցնում. «Իսկ դու ո՞վ ես»:

Եկ ու իմացիր՝ պատահականությու՞ն է դա, թե՞ մի ուրիշ բան: Նույնիսկ Ջերալդ Դարրելլի նման հիանալի մասնագետը այն հարցին, թե հասկանու՞մ են արդյոք թռչունները, պատասխանել է. «Վախենում եմ որևէ բան պնդել» և իսկույն պատմում է մի այսպիսի միջադեպ. թութակը ուշադիր լսում է ցանկապատին կապված էշի զռոցը և հարցնում. «Քեզ ի՞նչ է պատահել, սիրելի՛ս»:

Փարիզում բնակվող փաստաբան Ռաուլ Ուրսը երկու թութակ ունի, որոնք բազմիցս հաղթել են խոսող թռչունների միջազգային մրցումներում, կարելի է ասել խոսելու աշխարհի չեմպիոններն են՝ կապույտ ճակատով Իտո անունով ամազոնը և մոխրագույն ժակո ցեղի թութակ Ժակոտը: Այդ հազվագյուտ թռչունները գիտեն 500-ական բառ: Հինգ տարում տերը նրանց վարժեցնելու վրա ծախսել է 4000 ժամ: Իհարկե, այստեղ կարևոր է ոչ միայն ուսուցչի վարպետությունը, այլև թռչունների հազվագյուտ հաջող ընտրությունը: Իտոն և Ժակոտը կատարում են վեց հարյուր սկետչ (մի գործողությամբ կատակային ներկայացում), տարբեր երկխոսություններ, սուլում են օպերաների մեներգեր, երգեր, ընդօրինակում են ծիծաղ, լաց, հաչոց, բաժակների զնգոց, վրնջյուն, մլավոց: Ապշեցուցիչ կերպով այդ թռչունները հասկանում են իրենց տիրոջը, որի հետ շատ են կապված: Փաստաբանը, օրինակ, դիմում է մոխրագույն թութակին. «Ժակո՛տ, ասա՛ Իտոյին, թող կատու ձևանա»: Գորշ թութակը դիմում է ամազոնին. «Կատո՛ւ ձևացիր»: Եվ ամազոնը մլավում է՝ մյաո՜ւ:



Ամենազարմանալին այն է, որ երբ Ուրսը գրատախտակին գրում է 2+3, թութակը նայում է և պատասխանում՝ 5: Գրում է 4+4, թութակը պատասխանում է՝ 8 և այլն:

Գուցե սա չափազանց նուրբ վարժեցման տրյո՞ւկ է: Մի՞թե շատ տաղանդավոր վարժեցնողի սաները կարող են նախնական հաշիվ սովորել:

Իհարկե, երբևէ գիտությունը կպատասխանի այս հարցերին, իսկ առայժմ մեզ մնում է միայն զարմանալ և ենթադրություններ անել:

Թարգմ. ՅՈՒՆԻՔՍ ՍԱՐԴԱՐՅԱՆԻ



# ԻՆ՞Չ Է ՌԵԺԻՍՈՐԱԿԱՆ ԱՐՎԵՍՏԸ

*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*

*Ռեժիսորի դերը ժամանակակից թատրոնում մեծ է և անփոխարինելի: Շատ ավելի մեծ, քան կարող է թըվալ առաջին հայացքից, քան կարող ենք կարծել «բեմադրություն այսինչյանի» բառերը հայտագրերում կարդալիս:*

*Ռեժիսորը կամ, ինչպես հայերեն միանգամայն ստույգ ասվում է՝ բեմադրիչը, փաստորեն ներկայացման հեղինակն է, ինչպես որ գրողն է բեմադրված պիեսի հեղինակը, ինչպես որ կինոռեժիսորն է ֆիլմի հեղինակը, իսկ գրողը՝ սցենարի հեղինակը: Բայց մեր խոսքն այստեղ կվերաբերի թատերական ռեժիսորին:*

*Բեմադրիչի դերն ըմբռնելու համար պետք է իմանալ ի՞նչ ասել է բեմադրական արվեստ: Ըստ հնարավորին կարճ կարելի է ձևակերպել այսպես. դա գեղարվեստական ներդաշնակ և ամբողջական ներկայացում ստեղծելու արվեստն է՝ թատրոնի բոլոր տարրերի գործադրման շնորհիվ:*

*Ձևակերպումը կարճ է, դրա բացատրությունը՝ բավականաչափ երկար: Բեմադրել՝ ամենից առաջ նշանակում է պիեսի մեկնաբանը լինել: Իսկ դա նշանակում է, որ բեմադրիչը պետք է նախապես որոշի պիեսի գաղափարական բովանդակությունը, դրա հիմքում ընկած բախման (կոնֆլիկտի) բնույթը, գործողության զարգացման ընթացքը: Բայց ռեժիսորական մտահըղացման համար ոչ պակաս կարևոր են պիեսի գեղարվեստական՝ ժանրային-ոճական յուրահատկությունները. չէ՞ որ ամեն հեղինակ իր անկրկնելի յուրահատկություններն ունի և չի կարելի Շեքսպիրի պիեսը բեմադրել այնպես, ինչպես Մոլիերինը, Սունդուկյանի պիեսն այնպես, ինչպես Պարոնյանինը: Իհարկե, պիեսի գաղափարն ու գեղարվեստական յուրահատկու-*

## Անտառի ձայներ

Պառկել եմ անտառի բացատում,
Լսում եմ ձայները անտառի.
Անտառը մի հսկա երգչատուն,
Ուր երգում են առանց դադարի.
Ե՛վ անտես ծղրիդը իր երգով
Խոտերի հեռացող թարմությամբ,
Ե՛վ ծառը՝ տերևի շշուկով,
Իր խոնավ արմատի խորությամբ,
Ե՛վ մեղուն՝ նվաղած իր ծաղկի
Ծերացող շրշյունով դեղնաթերթ,
Ե՛վ սոսին՝ լարերով ջութակի,
Հովերի սուլոցով ոսկեթև:
Ու ձայնե՛ր, ու ձայնե՛ր ամպագույն,
Ճշուկներ և՛ կապույտ, և՛ դեղին,
Սկյուռներն իրենց մութ փչակում
Հյուսում են ձմռան տաք անկողին:
Տեսնում եմ ու լսում ամեն ինչ,
Անտառը՝ մի հսկա երգչատուն,
Բացել է երկնքի աչքը ջինջ
Ինձ վրա, անտառի բացատում:
Ու այնպես է թվում, կարծես թե
Ձուլվել եմ անտառի ձայներին,
Ու ես էլ դարձել եմ մի թիթեռ,
Տանում եմ արևն իմ թևերին:

ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ

## Ուրցասար

Առավոտը կապույտ թռչունի պես
Իր թևերն է փռել Ուրցասարին,
Սպասվում է այնտեղ մի նոր հանդես,
Հարսանիքն է այսօր թիթեռների:

Սուրհանդակներն ահա վաղվաղակի
Իրարով են անցել խայտանամուկ,
Ու՜մ ասես չեն կանչում հարսանիքի,
Արթնացել են արդեն ծեր ու մանուկ:

Խատուտիկներն ինչպես հարսնաքույրեր՝
Ձգեստներ են բերում ճերմակ, մաքուր,
Եվ բերում են ոսկի, արծաթ խույրեր,
Եվ փունջիներ թեթև ու ամպագույն:

Ծղրիդների մի մեծ նվագախումբ
Իրենց ջութակներն են արդեն լարել,
Օ՜, ինչպիսի՜ համերգ ու կերուխում,
Օ՜, ինչպիսի՜ թեթև, թեթև պարեր:

Ուրցասարի կանաչ դահլիճներում,
Վրանի տակ լաջվարդ առավոտի,
Ցողը՝ գինի ծաղկանց բաժակներում,
Իսկ նեկտարը ծաղկանց՝ անուշ խորտիկ:

թյուններն ամենից առաջ պետք է արտահայտվեն բեմում հանդես եկող կերպարների միջոցով։ Ահա ինչու բեմադրիչի աշխատանքի կարևորագույն օղակը նրա աշխատանքն է կերպարներն անձնավորող դերասանների հետ։ Բեմադրիչն է, որ ուղղություն է տալիս, թե ինչպես պետք է մեկնաբանվի դերերից ամեն մեկը և, բացի այդ, թե ինչ հարաբերության մեջ պետք է լինեն գործող անձինք միմյանց հետ։ Չէ՞ որ բոլոր դերերը պետք է «խոսեն միմյանց հետ» «բռնեն իրար», այլապես չի ստացվի գեղարվեստական ներդաշնակություն, չի ստացվի այսպես ասած՝ «անսամբլային ներկայացում», որ ժամանակակից թատրոնին առաջադրվող պարտադիր պահանջներից մեկն է։

Այնուհետև. հայտնի է, որ բեմական արվեստը, ի տարբերություն նկարչության և ի նմանություն երաժշտության, ժամանակային արվեստ է։ Բեմադրիչն է, որ ներկայացումը կազմակերպում է ժամանակային որոշակի միավորի մեջ՝ տալով նրան տեմպային ու ռիթմային այն բնույթը, որ բռնում է պիեսին. չէ՞ որ Չեխովի պիեսները չեն կարող խաղացվել այն ընթացքով, ինչպես, ասենք, իսպանական կոմեդիաները։

Բացի այդ. բեմական արվեստը, ի տարբերություն երաժշտության և ի նմանություն կերպարվեստի, տարածական արվեստ է նաև։ Ներկայացումը խաղացվում է որոշակի տարածության մեջ, և բեմադրիչն է, որ այդ տարածության մեջ կազմակերպում է ներկայացումն այնպես, ինչպես սազում է տվյալ պիեսին, այդ պիեսի մեջ ցույց տրված երկրին, դարաշրջանին ու միջավայրին։ Այստեղ պետք է չմոռանանք բեմադրական արվեստի ևս մի կարևորագույն կողմը՝ միզանսցեններ կամ ինչպես հայերեն ասվում է շատ ստույգ՝ բեմավիճակներ ստեղծելու վարպետությունը։ Ի՞նչ բան է միզանսցենը կամ բեմավիճակը. դա բեմում ստեղծված յուրաքանչյուր առանձին վիճակն է, իսկ ներկայացումն այլ բան չէ, քան այդ վիճակների գումարը։ Բեմադրիչն է, որ ամեն մի բնավորություն, ամեն մի բեմավիճակ ներկայացնում է այնպես, որ դա պատկերավոր կերպով բացահայտի պիեսի բովանդակությունը։ Միաժամանակ՝ ամեն մի բնավորություն և բեմավիճակ պետք է ներդաշնակ լինի պիեսի ժանրին (դրամայի պահանջներն այլ են, ողբերգությանը կամ կատակերգությանը՝ այլ), պիեսում պատկերված վայրին, ժամանակաշրջանին, միջավայրին (չէ՞ որ տարբեր վայրերի ու միջավայրերի մարդիկ տարբեր կերպով են խոսում ու շարժվում)։

Շատ էական է իմանալ, որ բեմադրիչը բոլոր այս հարցերը լուծելիս պետք է հենվի ոչ միայն պիեսի ու դրա հեղինակի, այլև սեփական կենսափորձի ու գիտելիքների, սեփական ստեղծագործական երևակայության վրա, որպեսզի կարողանա թեկուզ և շատ վաղուց գրված պիեսը կապել ներկայի, իր ապրած ժամանակի հետ, որպեսզի այսօրվա հանդիսատեսն իմանա, թե հանուն ինչի է խաղացվում վաղուց ի վեր գրված գործը։

Այստեղից հետևում է, թե որքան զարգացած, որպիսի հարուստ գիտելիքների ու երևակայության տեր արվեստագետ պետք է լինի բեմադրիչը։ Դա ավելի ևս հասկանալի կդառնա, եթե ասենք, որ բեմադրիչն է ուղղություն տալիս ներկայացմանը նկարչական ձևավորում ու երաժշտական ձևավորում տվող արվեստագետների աշխատանքին։

Ահա թե ինչպիսի բարդ գործ է բեմադրական արվեստը և ինչքան մեծ է նրա դերը ժամանակակից թատերական արվեստում։

Չպետք է զարմանալ, որ թեև թատերական արվեստի պատմությունը հաշվվում է հազարամյակներով՝ բեմադրական արվեստը, իբրև առանձին արվեստ, բեմադրիչի մասնագիտությունն իբրև ինքնուրույն մասնագիտություն՝ մի դար էլ չկա, ինչ գոյություն ունի։ Առաջներում բեմադրիչի գործը,— իհարկե, ոչ այսօրվա ծավալով ու խորությամբ,— կատարում էին կամ պիեսի հեղինակները (ինչպես հայ թատրոնում՝ Գ. Սունդուկյանը) կամ թատերախմբի առաջատար դերասանները (ինչպես հայ թատրոնում՝ Հովհ. Աբելյանը, Սիրանույշը)։

Բեմադրական արվեստը, բեմադրիչի մասնագիտությունը, իր այժմյան ըմբռնմամբ, ձևավորվել է անցյալ դարի վերջում՝ Արևմտյան Եվրոպայի երկրներում և Ռուսաստանում։ Անդրի Անտուանը, Օտտո Բրամը, Կոստանդին Ստանիսլավսկին, Վլադիմիր Նեմիրովիչ-Դանչենկոն են եղել այդ արվեստի առաջին մեծ վարպետները։ Մեր դարի առաջին տասնամյակներում ասպարեզ եկան և հետագայում սովետական թատրոնի նշանավոր բեմադրիչները դարձան Մեյերհոլդը, Վախթանգովը և Թաիրովը, որոնք մեծ ազդեցություն են ունեցել համաշխարհային թատրոնի զարգացման վրա։

Հայ թատրոնում առաջին բեմադրիչները, այդ արվեստի այսօրվա ըմբռնումով, եղել են Արմեն Արմենյանը և Օվի Սևումյանը, որոնք այդ մասնագիտությունը զուգակցել են իրենց դերասանական գործունեության հետ։ Հայ սովետական թատրոնում է միայն, որ բեմադրական արվեստն առանձնացավ իբրև առանձին մասնագիտություն։ Այդ արվեստի աչքի ընկնող վարպետները դարձան Լևոն Քալանթարը, Արշակ Բուրջալյանը, Արմեն Գուլակյանը, Վարդան Աճեմյանը։ Հայաստանի մայր թատրոնի՝ Սունդուկյանի անվան ակադեմիական թատրոնի գլխավոր ռեժիսորն է Աճեմյանը, որ շատ ու շատ մեծարժեք ներկայացումների հեղինակ է և իրավամբ համարվում է ոչ միայն հայ, այլև բովանդակ սովետական թատրոնի նշանավոր ռեժիսորներից մեկը։



# ԳՐՔԵՐԻ ՃԱԿԱՏԱԳՐԵՐԸ

*ՎԻԳԵՆ ԽԵՉՈՒՄՅԱՆ*



եռքով գրված գրքեր, ստեղծված համառ տքնությամբ ու տառապանքով, ձեռքով ծաղկազարդված, յուրաքանչյուրը՝ մեկ օրինակից...

Ամեն մի ձեռագիր գիրք մյուսից տարբերվում է իր չափսերով, կան հսկա գրքեր և կան չափազանց փոքրերը: Գրչագրերը տարբերվում են նաև տարիքով, ճակատագրով, աշխարհ գալու, իրենց ստեղծողների, պահպանողների կյանքի ու բնակավայրերի, դարի այլևայլ ճշմարտախոս պատմություններով:

Ամենահնագույն հայերեն գրքերը գրված են մագաղաթե թերթերի վրա:

Կան նուրբ մագաղաթի թերթեր՝ վարդագույն կամ ճերմակ, թափանցիկ կամ շղարշված կենդանի մաշկի ազնվաճաշակ գունատությամբ: Կան հաստ ու կոշտ մագաղաթի թերթեր, կուչ եկած ու կնճռոտված, եթե հմուտ չի եղել մագաղաթագործը:

Ձեռագիր գրքերի մեծ մասը, տասներորդ դարից այս կողմ, հիմնականում թղթե թերթերի վրա է գրված, և այդ թուղթը ողորկված է ու կոկված, մոմած է կամ օսլայած՝ գործն իմացողի սրտացավ հմտությամբ:

Նրանց կազմերը զույգ տախտակներ են՝ պատրված կարմրավուն կաշվով: Դրանց բոլորի վրա երկրաչափական հնարամիտ զարդեր են արված ճնշումով: Հաճախ կազմերեսներին սրա ու նրա կողմից և տարբեր ժամանակներում փակցված են արծաթե զարդեր, գամված են մետաղե կոճակներ, կոստղեր, կողպեք-փականքներ: Կան գրքեր արծաթակազմ, նկարակերտ և ոսկեջրած, ընդելուզված մարգարիտներով, թանկագին քարերով:

Գրքերի կազմերին և թերթերի վրա անհամար են ժամանակների դրոշմները. անջնջելի մատնահետքեր, ձեթի ու մոմի ծոր, ձյան, անձրևի, արյան ու արցունքի խունացած կնիք, մանավանդ կրակի խանձվածք և մուր: Գրքերում դեռևս դեգերում են չորացած խոտ ու ծաղկի, գարեհացի ու խնկի մոլորած թույրեր:

Դար ու դարեր մարդկանց կողքին ապրելով, գրքերը հլու և համբերությամբ բաժնեկից են եղել նրանց բոլոր ուրախություններին ու դառնություններին, տառապել են միասին և միասին մաքառել գոյատևելու համար:

Հեշտ չեն գրվել մեր գրչագիր մատյանները, մանավանդ անհնարին դժվար է եղել հազարամյա ավեր-կոտորածի մեջ նրանց պահպանելը: Կարող են լեգենդ թվալ Մաշտոցյան Մատենադարանի մոտ 11 հազար հայերեն գրքերից յուրաքանչյուրի ապրելու և կորստից փրկվելու պատմությունները: Այդ գրքերը փրկվել են շնորհիվ նրանց նկատմամբ համարյա պաշտամունքի հասած սիրո և ակնածանքի այն արտասովոր համարման, թե նրանք մարդկանց նման առող-խոսող են, պատմում են աշխարհի, նաև իրենց հոգս ու ցավի, իրենց տառապանքների մասին: Ըստ այդ համարման՝ գրքերը մասն են հայ ժողովրդի, նրա ապրելու հավատն են, նրա անհինջ լեզուն: Ահա ինչու մարդ արարածների նման նրանք էլ «գերևարվում են» և «գերադարձ լինում», «պանդխտանում են» և վերադառնում «հոգևատանջ օտարությունից», «ծնվում են», նույնիսկ «լալիս», նաև՝ «մեռնում»:

Պատմությունը հիշում է մի իսկություն, որ կատարվել է 1400 թվականին և կրկնվել հազար-հազար անգամ: Այդ տարի Թավաքալ անունով մի հայ մարդ Հալեպից գնում է Այնթապ՝ տան համար հաց գնելու վերջին դրամով: Հասնելով շուկա, պատահում է մոնղոլ ասպատակողների: Այս մոնղոլները հայերեն մի գիրք դրած գետնին՝ հայհոյում, անարգում են հայի գիրքը, հայ գիրը, հայոց լեզուն ու հավատը: Դեպքը պատմող գրքի հիշատակագրությունը ավարտվում է այսպես.

«Հույժ արտասվեց (Թավաքալը)... տվեց իր հացի գինը և առավ (մատյանը)... ազատեց, անօրեններից ու բերեց տուն...»

Գիրքը գերությունից ետ բերելը համաժողովրդական գործ էր և սրբազան պարտականություն: Գերադարձ անելով՝ որոնում էին տիրոջը և սպասում էին այնքան, մինչև կամ նա հայտնվեր, կամ ժառանգը, և վերադարձնում էին «հոժար սրտով»: Հանձնում էին տիրոջը, որպեսզի գիրքը, «պանդուխտ» չհամարվի, վերադառնա իր տեղը, իր հարկի տակ:

Գրքերը, հների իմացածով, ոչ միայն ծնվում էին, ապրում: Նրանք նաև ծերանում էին ու մեռնում, այսինքն՝ այնպես էին մաշվում, որ անհնարին էր դառնում նորոգելը: Մեռած գրքի թերթերը տուփի մեջ դնելով թաղում էին:



# ԾԱՄԱՎՈՐ ՄԱՐԱԹՈՆԱԿԱՆՆԵՐԸ

Մոտ հիսուն տարի սրանից առաջ հոլանդական գիտնական Հերտ Վան Էյսկենը հետազոտեց մարաթոնականների՝ գերերկար տարածություններ վազողների դիմացկունությունը: Դիտումները կատարվում էին հերթական օլիմպիադային նախապատրաստվող ատլետների վրա: Այն ժամանակների համար նրանք մարզվում էին «իրենց չնմանելով»՝ օր ու մեջ վազելով 15-20 կիլոմետր:

Մի օր, երբ մարաթոնականները հանգստանում էին, Վան Էյսկենը ուշադրություն դարձրեց իր կլինիկայի մոտ գտնվող ամայի տարածությունում առավոտից-երեկո խաղացող երեխաների վրա: Սովորության համաձայն գիտնականը սկսեց քրոնոմետրել նրանց վազքը: Արդյունքը ապշեցուցիչ էր՝ շատ երեխաներ օրական վազում էին 20-25 կիլոմետր: Այստեղ աղջիկները դուրս եկան ավելի շարժուն և դիմացկուն:

Միաժամանակ դա սենսացիա էր: Հումորիստական ամսագրերում մինչև անգամ մարաթոնյան տարածություններում աղջիկների թիմ հանելու առաջարկություններ երևացին: Բայց աղմուկը հանդարտվեց, երեխաները շարունակում էին խաղալ ամայի տարածությունում, իսկ ատլետները՝ պատրաստվում էին օլիմպիական խաղերին:

Եվ ահա այն, ինչի վրա կես դար առաջ ծիծաղում էին, իրականացավ: ԱՄՆ-ում կանանց առաջնություն անցկացվեց մարաթոնից՝ 42 կմ. 192 մ. վազքից: Մրցումներում երրորդ տեղը գրավեց տասնամյա Էլիզ Սոմմերսը: Այդ տարածությունը նա անցավ 3 ժամ 10 րոպե 14 վայրկյանում՝ ժամանակ, որը պատիվ կբերեր յուրաքանչյուր տղամարդ վազողի:

Իսկ միանգամայն վերջերս Կալվեր-Սիթիի «Արևմտյան կիսագնդի մարաթոն» խոշորագույն միջազգային մրցումներում, 750 այլ մասնակիցների հետ մեկնագիծ դուրս եկավ Սյուզան Բուտլիկը: Նրա նվաճումը՝ 4 ժամ 12 րոպե, զիջում է Սոմերսի մանկական ռեկորդին: Բայց չէ՞ որ Սյուզանը ընդամենը ութ տարեկան էր:

Մինչև մարաթոնյան մեկնագիծ դուրս գալը և՛ Էլիզը, և՛ Սյուզանը բժիշկների հսկողության տակ շատ մարզվեցին: Իսկ սկսեցին նրանք ամենափոքրից՝ բակերում և բացատներում խաղալուց, կարճ տարածություններ վազելուց:

Սահմանված տարածությունը, որ վազելու կարող է դուրս գալ յուրաքանչյուրը, ում տասը տարին լրացել է, 1400 անգամ մարաթոնյանից կարճ է: Դա երեսուն մետր վազքատարածություն է: Այն հարկավոր է հաղթահարել «Համարձակներ և ճարպիկներ» ԴԱՊ համալիրի առաջին աստիճանի նորմաները հանձնելիս: Արծաթե նշան ստանալու համար տղաները պետք է 30 մետր վազեն 5,8 վայրկյանում, աղջիկները՝ 6 վայրկյանում: Այն երեխաները, որոնք որոշել են պայքարել ոսկե նշանի համար, պետք է արագությունը ավելացնեն: Տղաների նորմատիվը 5,2 վայրկյան է, իսկ աղջիկներինը 5,4 վայրկյան:

*Յ. ԿՈՎՐՈՎ*

---

Թշնամու հանկարծահաս ասպատակությունը ստիպում էր գրքերը նաև «ողջ-ողջ» թաղել՝ անվերապահ մահից փրկելու հույսով: Թաղելով հողի տակ, խուլ և անառիկ անձավներում կամ պարիսպների շարվածքի մեջ, գրքերի տերերն ու թաղման մասնակիցները երդվում էին, որ երբևէ, լավ օրվա ժամին իրենք կամ իրենց որդիները կգան, կբանան գրքերի սուրբ գերեզմանները և, նրանց հարություն տալով՝ կհանձնեն մարդկանց:

Այսպես, Հաղպատի ձորի խուլ մի քարանձավում է թաղվել 9-րդ դարում գրված մագաղաթե մի գիրք և հանվել է միայն անցյալ դարավերջին, տարաբախտաբար այն ժամանակ, երբ գիրքը քարացել էր կրաջրի կաթիլներից և այլևս փակվել էին նրա վահեմի խոսուն շուրթերը:

Թղթե մի գիրք, գրված 16-րդ դարում, ո՞վ գիտի ու՞մ ձեռքով թաղվելով Երևանի բերդի պարսպի մեջ, միայն մեր օրերում, բերդի պարիսպները քանդելիս, վերստին կենդանություն առավ ու «հանձնվեց մարդկանց»:

Մարդիկ երդվում էին ոչ միայն սրբացած նախնիների, այլև ճանաչված և հեղինակություն վաստակած Գրիգոր Նարեկացու, Ներսես Շնորհալու, Գրիգոր Տաթևացու գրքերով: Դրա համար էլ հարսին տրվող բաժինքի մեջ գիրքը դարձավ «սրբազան բաժինք», իսկ եթե տրվեց որդուն որպես ժառանգություն, ապա վավերացվեց ժողովրդով, վկաների անուններով: Բաժանում ընկած տան մեջ գիրքը կովախնձոր էր, ինչպես այգին, տունը, արտը: Գիրքը հայրենի մի պտղունց հողին հավասարազոր սրբություն էր պաշտպանության գնացողի մախաղում:

Գիրքը տնապահ նախնիների պատգամախոս նշխարք էր, և թաշկինակի մեջ առնելով՝ դնում էին տան պատվավոր անկյունում՝ սրբապատկերի փոխարեն: Գիրքը դնում էին նաև բարձի տակ՝ որպես վատ երազի խանգարիչ, հիվանդություններից պաշտպանող և բուժող, երդման և արիության պահապան:

# ՈՐՊԵՍԶԻ ԱՄԵՆ ԻՆՉ ԻՄԱՆԱՆ

Փորձենք մտովի գիտությունը պատկերել իբրև ծառ, իսկ նրա ճյուղերը՝ գիտության տարբեր բնագավառներ: Այսօրվա գիտությունը մեր առջև կներկայանա իբրև հազարամյա, հաստաբուն մի ծառ, որը շարունակում է աճել ու անընդհատ նորանոր ընձյուղներ տալ: Ոչ հեռու անցյալում գիտության չափազանց նեղ համարվող առանձին բնագավառներն այսօր արդեն ենթաբաժինների են բաժանվում, ծնվում են նոր գիտություններ, ինչպիսիք են կիբեռնետիկան, բիոնիկան, տիեզերական կենսաբանությունը և այլն: Ատտիճանաբար անհրաժեշտություն է առաջանում դասավանդվող հանրակրթական առարկաներից բացի, դպրոցականներին ծանոթացնել նաև այլ, հնարավորին չափ շատ գիտությունների հետ:

Այդ հարցը լավ ձևով է լուծվել մայրաքաղաքի Ավ. Իսահակյանի անվան №16 դպրոցում: Դեռ տարիներ առաջ այստեղ աշակերտներն ուսուցիչների օգնությամբ առարկայական տասնօրյակներ էին կազմակերպում, որոնց ընթացքում կարդացվում էին զեկուցումներ և պարզաբանվում էին տվյալ առարկայի հետ կապված, բայց ուսումնական ծրագրերով չնախատեսված, հարցեր: Դպրոցականները չէին կարող միայն սեփական ուժերով հասկանալ ու ընկերների համար հասկանալի զեկուցումներ կազմակերպել գիտության նորագույն նվաճումների մասին: Դա կարող էր անել միայն գիտնականը, որը տարիներ շարունակ նվիրվել է այդ աշխատանքին: Դպրոցի դիրեկցիան ու կոմերիտական կազմակերպությունը որոշեցին կազմակերպել աշակերտական գիտական ընկերություն:

— Ըստ մեր պատկերացումների,— ասում է դպրոցի դիրեկտոր Գ. Ստեփանյանը,— աշակերտական գիտական ընկերությունը պետք է կարողանար հաղթահարել երկու հիմնական խնդիր: Առաջինը՝ աշակերտներին հաղորդակից դարձնել այսօրվա գիտության ամենավերջին նվաճումներին և երկրորդը՝ նրանց օգնել մասնագիտական կողմնորոշման հարցում: Դրա համար մենք որոշեցինք հրավիրել մեր հանրապետության առաջատար գիտնականներին, արվեստագետներին և խնդրել նրանց, դպրոցականներին մատչելի ձևով պատմեն իրենց աշխատանքի մասին:

Գիտական ընկերությունը կազմակերպվեց 1971 թվականի հոկտեմբերին: Հենց առաջին պարապմունքին, որտեղ զեկուցումով հանդես եկավ ՀՍՍՀ Գերագույն սովետի նախագահության նախագահի տեղակալ Հովհ. Բաղդասարյանը, ընկերության անդամներ դարձան 8—10-րդ դասարանների մոտ 160 աշակերտներ:

Ընկերության ստեղծման առաջին տարում աշակերտները մեծ հետաքրքրությամբ լսեցին Հովհ. Շիրազին, դոկտոր-պրոֆեսոր Ա. Ճաղարյանին, ակադեմիկոս Ա. Շահինյանին, դոկտոր-պրոֆեսոր Զ. Դոլուխանյանին, հանրապետության կոմպոզիտորների միության վարչության նախագահ Է. Միրզոյանին և ուրիշների: Զեկուցումներ, որ շատ հաճախ ուղեկցվում էին կինոֆիլմերի ու գունավոր լուսապատկերների ցուցադրմամբ, աշակերտների առջև բացեցին տարբեր գիտությունների շատ ու շատ հետաքրքիր կողմեր, որոնց մասին նրանք շատ քիչ տեղեկություն ունեին:

Հաջորդ ուսումնական տարում գիտական ընկերության աշխատանքները վերսկսվեցին հանրապետության Գերագույն սովետի նախագահության նախագահ, ակադեմիկոս Ն. Հարությունյանի ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակին նվիրված զեկուցումով, իսկ 1973-74 ուսումնական տարում՝ ակադեմիկոս Վ. Համբարձումյանի աստղաֆիզիկայի հարցերին նվիրված զեկուցումով:

Ես զրուցում եմ տասներորդ դասարանցիներ Կարինեի, Հասմիկի, Գարունի, Արփիկի, մյուսների հետ: Նրանք պատմում են իրենց դուր եկած զեկուցումների, գիտական ընկերության կազմակերպած միջոցառումների մասին: Պատմում են, որ դպրոցն ավարտելուց հետո շրջանավարտները չեն ցանկանում հրաժեշտ տալ գիտական ընկերությանը: Այս տարվա փետրվարին դպրոցում գիտական ընկերության և Խ. Աբովյանի անվան մանկավարժական ինստիտուտի դասախոսների միացյալ ուժերով կազմակերպվել է գեղագիտության հարցերին նվիրված տասնօրյակ, որին մասնակցել են նաև ինստիտուտում սովորող դպրոցի նախկին աշակերտները, իսկ ժողովրդական նկարիչ Գ. Խանջյանի հետ հանդիպելուց հետո այցելել են նրա արվեստանոցը...

— Ուրախությամբ պետք է նշել, որ բոլոր նրանք, ում հրավիրում ենք, հաճույքով համաձայնվում են հանդիպել ու զրուցել դպրոցի աշակերտների հետ,— ասում է ուսմասվար Մ. Հարությունյանը:— Ահա, տեսեք, թե ինչ է գրել արվեստագիտության դոկտոր-պրոֆեսոր Ռուբեն Զարյանը:

Ես կարդում եմ հյուրերի հուշ-ալբոմում գիտնականի թողած տողերը.

«Ոչ ոքի խորհուրդ չէի տա մերժել նրանց, որքան էլ զբաղված լինեն, որովհետև իրենց սպասում է բոլոր լսարաններից գերադասելի մի դահիճ...»

*Հայկ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

# «ՄԻՇՏ ՊԱՏՐԱՍՏ» ԵՐԹԸ ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է

Այս անգամ «Միշտ պատրաստ» երթը նվիրված է Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի տարած հաղթանակի 30-ամյակին:

Երթի մասնակից պիոներները պետք է ունենան որոշակի խնդիրներ ու առաջադրանքներ, ակտիվ մասնակցություն ցուցաբերեն դրուժինայի և ջոկատի կյանքին, հանդես գան հետաքրքիր նախաձեռնություններով, բարեկամության սերտ կապեր ստեղծեն Սովետական Միության և աշխարհի տարբեր երկրների դպրոցականների հետ, նպաստեն խաղաղության ու համերաշխության գործի ամրապնդմանը, ուսումնասիրեն հայրենի երկրի, բնակավայրի ու դրուժինայի պատմությունը, հարստացնեն իրենց գիտելիքները, օգնեն ընկերներին, էքսկուրսիաներ ու արշավներ կազմակերպեն սովետական ժողովրդի հեղափոխական, մարտական ու աշխատանքային փառքի ուղիներով:

Իհարկե, այս և բազմաթիվ այլ աշխատանքների համար կան առանձին երթուղիներ, որոնց բովանդակությանը դուք արդեն ծանոթ եք:

Այն դրուժինան, որի ջոկատների մեծ մասը աջթևային են դարձել, որտեղ պիոներական ակտիվը՝ պիոներական կյանքի մարտական կազմակերպիչն է և դրուժինան շրջանում ու քաղաքում հայտնի է իր հետաքրքիր գործերով՝ ուսման, աշխատանքի, մարզական բարձր ցուցանիշներով, որտեղ ավագները հոգ են տանում կրտսերների նկատմամբ,— կստանա «աջթևայինի» կոչում և կպարգևատրվի ՀամԼԿԵՄ Կենտկոմի ու Վ. Ի. Լենինի անվան համամիութենական պիոներական կազմակերպության Կենտրոնական խորհրդի Պատվավոր ժապավենով, որը ամրացվում է դրուժինայի դրոշին:

Ամենաակտիվ պիոներները՝ երթի գործը կազմակերպողները, կպարգևատրվեն պիոներական կազմակերպության Կենտրոնական խորհրդի պատվոգրով, նրանց անունները կգրվեն համամիութենական, հանրապետական պատվո գրքերում, կդառնան հանրապետական հավաքի, 1975 թվականի օգոստոսին «Արտեկ» ճամբարում անցկացվող «Ողջո՛ւյն, հաղթանակ» միջազգային տոնակատարության մասնակից:

Երթի մեկնարկը տրվել է «Արտեկ»-ում՝ պիոներների համամիութենական 6-րդ հավաքում, իսկ արդյունքները կամփոփվեն «Ողջո՛ւյն, հաղթանակ» պիոներական միջազգային տոնակատարության ժամանակ:




## ԽՈՐՀՐԴԱՎՈՐ ԿՂԶԻ

*1831 թվականին Միջերկրական ծովում անսպասելիորեն հայտնվեց մեկուկես կիլոմետր երկարությամբ և 120 մետր ծովի մակերևույթից բարձր մի կղզի: Պատահականորեն այդ շրջանում հայտնված անգլիական նավի կապիտանը, պարզեց, որ այն ոչ մի քարտեզի վրա նշված չէ: Այն ժամանակ նա որոշեց, որ հայտնված ցամաքը պետք է պատկանի Անգլիային և կղզում կանգնեցրեց անգլիական դրոշ: Բայց մինչև նավը Անգլիա կհասներ, կղզին դրոշի հետ միասին ջրի տակ անցավ: Կղզին մի անգամ էլ 1863 թվականին հայտնվեց: Բայց մինչ գիտնականները կհավաքվեին կղզին ուսումնասիրելու համար, այն նորից ծովային խորխորատ իջավ:*

## ԿԵՂԾ ՆՆՋԵՑՅԱԼՆԵՐԻ ԱԿՈՒՄԲ



Այդ ակումբը վերջերս է հիմնադրվել Նյու-Յորքում: Ակումբի անդամ կարող է դառնալ յուրաքանչյուր ոք, ում երբևէ սխալմամբ մահացած են համարել: Եվ այն էլ, եթե պաշտոնապես այդ մասին հայտարարված է եղել մամուլում կամ զինվորական ու այլ գերատեսչության հաղորդագրության մեջ: Ակումբի խորհրդանշանը ծիծաղող գանգն է, իսկ ակումբի պրեզիդենտ են ընտրել նրա անդամներից ամենավաստակավորին՝ այդ մարդուն երեք անգամ մահացած են հայտարարել:

## ԳՈՐՇԱՇՆԵՐԻ ԳՅՈՒՂԸ



*Մոտ հազար շներ են ապրում բավարական Գեգըրվայս գյուղում, չնայած այնտեղ ընդամենը 600 մարդ է բնակվում: Գյուղացիները այդքան շուն են բազմացրել միայն ուշադրություն գրավելու համար: Գյուղը ոչ մի տեսարժան վայր չուներ, իսկ զբոսաշրջիկներին իրենց գյուղը բերելու ուրիշ միջոց չկար: Գեգըրվայս այցելած յուրաքանչյուր զբոսաշրջիկի մեկ գորշաշուն են տալիս, «որպեսզի մարդն իրեն միայնակ չզգա»:*

## ԱՎՏՈԲՈՒՍԻ ՓՈԽԱՐԵՆ՝ ՈՒՂՂԱԹԻՌ

ԱՄՆ-ում կազմվում է մի նախագիծ, որի համաձայն քաղաքային սովորական փոխադրամիջոցները փոխարինվելու են ուղղաթիռներով: Ամերիկյան մասնագետների կարծիքով, ուղղաթիռը անհամեմատ շատ առավելություններ ունի: Այն գետնի վրա գնացող փոխադրամիջոցներից երեք անգամ արագ է թռչում, փոխադրումների ավելի ճկուն ցանց է ստեղծվում և քաղաքի ընդհանուր մակերեսից 1300 անգամ քիչ տեղ կպահանջի: Քաղաքներում, հավանական է, կօգտագործեն երկշարժիչ ուղղաթիռներ՝ 10 ուղևորի համար, բայց մինչև ուղղաթիռների բարձրանալը քաղաքի փողոցների վրա,՞ անհրաժեշտ է պակասեցնել նրանց աղմուկը առնվազն 90 տոկոսով:



## ԱՎՏՈՄԵՔԵՆԱՆ՝ ԶՐՈՒՑԱԿԻՑ



Որպեսզի մեքենայի վարորդը ուշադիր հետևի ճանապարհին և հապվադեպ նայի չափող սարքերի ցուցանիշներին, անգլիական և ամերիկյան ինժեներները, համատեղ ջանքերով, էլեկտրոնային ապարատ են ըստեղծել, որը ոչ միայն հետևում է ավտոմեքենայի կանոնավոր աշխատանքին, այլև լսելի ձայնով նախազգուշացնում է՝ վարորդին բոլոր տեսակի անսարքությունների մասին. «Ինձ յուղ է պետք», «Մեկ քառորդ բաք վառելիք է մնացել», «Արգելակները փորձիր»:

Ինժեներները գտնում են, որ այդպիսի ապարատը մի հինգ տարի հետո կփոխարինի վարորդի խցիկում եղած բոլոր սլաքներին ու ցուցիչ սարքերին: Նա վերանորոգելու ժամանակ կօգնի և մեխանիկներին, ասելով, թե որտեղ և ինչն է անսարք: Եվս մի հաճելի անակնկալ: Հաղորդավարի դերում, որոնք հնչեցնում են ապարատը, հրավիրված են հանրահայտ դերասանները, որոնց ձայնը լավ ծանոթ է հանդիսատեսին:

## ՊԱՏԱՍԽԱՆ «ՊԻՈՆԵՐ» № 10

## ՆԵՐՍԵՍ ՇՆՈՐՀԱԼՈՒ ՀԱՆԵԼՈՒԿԻ ԼՈՒԾՈՒՄԸ

*Հին ձեռագրերում այդ հանելուկի պատասխանն է՝ «Արեգակն»։ Սակայն այս տեղեկությունն էլ չի օգնում նրա միտքը լրիվ բացատրելու։ Ուստի ՀՍՍՀ ԳԱ պրեզիդենտ Վ. Համբարձումյանը տվեց նրա լրիվ լուծումը։ «Պետք է ասել, — գրեց նա, — որ այս հանելուկը սոսկ արևին չի վերաբերում, այլև տարվա օրերին ու կիսամյակներին։ Փաստորեն այստեղ ունենք գողտրիկ բանաձև հետևյալ տեսքով.*

*36 (Ա-ից Ք)×5 = 180 օր (6 ամիս)*
*36 (Ք-ից Ա)×5 = 180 օր (6 ամիս)։*

*Առաջին տողի «36 (Ա-ից Ք)» հատվածը համապատասխանում է հանելուկի առաջին տողին («Նա բարձրանայ Այբէն ի Քէն»), ուր 36-ը հայոց հին այբուբենի տառաքանակն է։ Երկրորդ տողի «36 (Ք-ից Ա)» հատվածը համապատասխանում է հանելուկի երկրորդ տողին (Եւ խոնարհի դարձեալ անդրէն), ուր 36-ը նորից հայոց հին այբուբենի տառաքանակն է, միայն թե այս անգամ հաշիվը կատարված է վերջին տառից դեպի առաջին տառն ընթացքով։ Փակագծերից դուրս գտնվող հատվածը («×5») համապատասխանում է հանելուկի երրորդ տողին («Ամեն տառին հինգ օր՝ իւրմէն»), որի համաձայն արևի այդ 36-օրյա ընթացքը պիտի բազմապատկել 5-ով։ Ստացված արդյունքն էլ (180 օր) համապատասխանում է հանելուկի չորրորդ տողին («Զնայ զվեց ամիսն ամեն»), այսինքն, ցույց է տալիս 6 ամսվա օրերի քանակը։ Ներսես Շնորհալին «Ա-ից Ք» (180 օր) և «Ք-ից Ա» (180 օր) կրկնակի հաշիվն է արել, որպեսզի նկատի առած լինի նաև մեկ տարվա օրերի քանակը (360 օր)։*

# ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈ՛ՒՆ,
# ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈ՛ՒՆ,
# ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈ՛ՒՆ

Պատանի՛ նկարիչներ, հայտարարվում է մրցույթ՝ «Ելի՛ր, երկիր իմ անծայրածիր» նշանաբանով, նվիրված ֆաշիստական Գերմանիայի դեմ սովետական ժողովրդի տարած փառապանծ հաղթանակի 30-ամյակին։

Օրեցօր կառուցապատվում, շենանում և ավելի է գեղեցկանում մեր հայրենիքը։ Ծնվում են նորանոր քաղաքներ ու գյուղեր, հսկա գործարաններ, մշակույթի օջախներ, բացվում ջրանցքներ։ Իսկ ու՞մ ձեռքերով են արվում, ովքե՞ր են շունչ ու ոգի տալիս այդ ամենին... Իսկ ի՞նչ հետաքրքիր գործեր են կատարում ձեր հասակակիցները դպրոցում։ Ինչպիսի՞ շեֆական օգնություն են ցույց տալիս կոլտնտեսականներին, շինարարներին, սահմանապահներին ու միլիցիայի աշխատողներին։

Բազմաթիվ ու բազմազան են այն թեմաները, որ ձեզ կտա մտովի ճանապարհորդելու հնարավորությունը մեր անծայրածիր երկրում։ Մնում է, որ գործի դնեք ձեր շնորհքը, վրձինն ու երևակայությունը։

Հաջողված նկարները կտպագրվեն մեր ամսագրում, կկազմակերպվի լավագույն աշխատանքների ցուցահանդես։

Նկարների չափսերը պետք է լինեն 14×28 սմ։

Ծրարների վրա գրել՝ Երևան-15, Կարմիր բանակի 15, «Պիոներ» ամսագիր, «Ելի՛ր, երկիր իմ անծայրածիր» մրցույթի ժյուրիին։

Ամենաշնորհալիներին սպասում են մրցանակներ։

Նյութերի ստացման վերջին ժամկետն է 1975 թ. ապրիլի 10-ը։

## ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐ

«ՊԻՈՆԵՐ» № 10

ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԽԱՉԲԱՌ-ԳԱՂՏՆԱԳԻՐ

*1. Վագներ։ 2. Լիստով։ 3. Մոցարտ։ 4. Կազալս։ 5. Շտրաուս։ 6. Տիգրան։*

*Կարդում ենք՝ «Ալմաստ» և «Անտունի»։*




Լույս է տեսնում 1928 թվականից

# ՊԻՈՆԵՐ

№ 11 Նոյեմբեր 1974 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝
ԵՎ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ


Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝
ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԹՈՐՈՍՅԱՆ Ժ., ԽԱՆԶՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գլխ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

«Пионер» на армянском языке. Орган ЦК ЛКСМ Армении и республиканского совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375200, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15։
Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96։

ՎՖ 07647։ Պատվեր 1768։ Տպաքանակ՝ 78068։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 24/X 1974 թ.։

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91։



ԹՈՐՈՍՅԱՆ ԱԶԱՏ
Աբովյանի շրջան, գյուղ Ջառ, 12 տ.



ԱՎԵՏԻՍՅԱՆ ՔՆԱՐԻԿ
Երևան, 11 տ.



ԲՐՈՅԱՆ ՍՈՆԱ
Վրաց. ՍՍՀ, Բոգդանովկայի շրջան,
գյուղ Սաթխա, 12 տ.



ԱՐՍԵՆՅԱՆ ՀԱՄԱԶԱՍՊ
Եղեգնաձորի շրջան, գյուղ Արենի, 12 տ.



ՍԱՐԳՍՅԱՆ ՅԱՍԱՄԵՆ
Վրաց. ՍՍՀ, Մառնեուլի շրջան,
Շահումյան ավան, 14 տ.



ԳԵՎՈՐԳՅԱՆ ԳԱԳԻԿ
Էջմիածնի շրջան, գյուղ Մերձավան, 12 տ.

ԳԻՆԸ 10 Կ. ԻՆԴԵՔՍ 77806